# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 6-Ը ՈՒՍՈՒՑՉԻ ՕՐՆ Է



Արաքսյա Գասպարյան՝ Արարատ քաղաքի № 1 դպրոցի ուսմասվար, հանրապետության վաստակավոր մանկավարժ, արժանացել է սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման՝ 36 տարի անընդմեջ մանկավարժական և հասարակական բեղմնավոր գործունեության համար:



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## Աշնան դաշտում

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Արդեն աշնան հերկ են հերկել,
Արտույտներն են այստեղ երգել
Ու չվել վաղուց,
Իջնում է պաղ իրիկնաժամ,
Օրորվում է դաշտում աշնան
Քամին մեղմաշունչ:

Վեր է ելնում մշուշն աղոտ,
Սփռվում են թուփ ու ծղոտ,
Դաշտում մնացած·
Մայրամուտով օրն է մարում,
Ագռավներն են հատիկ ճարում
Հերկի վրա թաց:

Մութն աչքով է լուսին անում,
Օրը վերջին շողն է տանում,
Մաղում մթնշաղ,
Դաշտի՛ վրա կամաց-կամաց
Իջնում է մեղմ ու ամպամած
Գիշերը խաղաղ:

# ՀԵՌՈՒ, ԲԱՐՁՐԻԿ ՍԱՐՈՒՄ

*ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ*

Այն հեռու, բարձրիկ սարում է
ապրում
Հովը անուշիկ·
Որ շոգ ու տապին գա միշտ գտնի քեզ
Ու գգվի հուշիկ:

Այն հեռու, բարձրիկ սարում է
ապրում
Բույրը անուշիկ,
Որ սլանում է դեպի քեզ անվերջ
ու դառնում է գիրկ,
Որ դու մեծանաս նրա սիրո մեջ:

Այն հեռու, բարձրիկ սարում է ապրում
Պայծառ լճակը,
Որի ձկները գիտեն քո լեզուն:
Նրա հատակը
Այն զարմանալի արկղն է, որից
Ծիածանների գույներն են ելնում:

Այն հեռու, բարձրիկ սարում է ապրում
Հեքիաթի ձին —
Ամենաարագ թռչողն աշխարհում:
Նա կգա մի օր, որ դու միանաս
Նրա թռիչքին:

# ԵՎ ԼՍԻՐ

Այս պատմվածքի փոքրիկ հերոսուհու արարքը, որ այնքան վշտացնում է հորը, բնության նրկատմամբ անսրտություն, անհոգություն արտահայտելուց բացի, աղջկա բնավորության ուրիշ ի՞նչ վատ կողմեր է մատնում: Գրեցե՛ք ձեր կարծիքը: Հրավիրում ենք ձեզ՝ ամսագրի էջերում մտքերի փոխանակության այդ հարցի շուրջ:

*«ՊԻՈՆԵՐԻ» խմբագրություն*

ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

Նստած չոր կոճղին, լիաթոք շնչում էի փշատերև անտառի այնքա՜ն հաճելի, առողջարար բուրմունքը:

Խաղաղ առավոտ էր, շրջակայքում ոչ ոք չկար: Լսվում էր միայն թռչունների առավոտյան գեղգեղանքը, երբեմն ծառերից, այստեղ ու այնտեղ, խուլ թխկոցով հասունացած կոներ էին ընկնում գետնին:

Բայց, ահա, կածանի ծայրին մի փոքրիկ աղջիկ հայտնվեց: Նա վազում էր, հավանաբար, թիթեռի ետևից, որին այդպես էլ չկարողացավ բռնել:

Զարմանալի է, ի՞նչ էր անում միայնակ փոքրիկն անտառում: Բայց, ոչ, հաստաբուն ծառերի ետևից էլի մեկը երևաց, միջահասակ տղամարդ էր, ձեռքին՝ մի փոքրիկ բաց գիրք, որը ծալեց և թևի տակ դրեց, երբ աղջիկը վազեց դեպի նա և սկսեց արագ-արագ ինչ-որ բան ասել, երևի բողոքում էր թիթեռից, որ ճախրել էր վեր, շատ վեր և անվերադարձ հեռացել իրենից: Մարդը շոյելով նրա գանգրահեր գլխիկը, հանգստացրեց նրան, նրանք շարունակեցին կածանով առաջանալ: Հավանաբար հայր ու աղջիկ էին, գալիս էին անտառի խորքից, ուր լայնատերև ծառերն էին գերիշխում, իսկ այստեղ եղևնիներ էին միայն, եղևնիներ և գետնին թափված մեծ ու փոքր, հին ու նոր, ամբողջական և կոտրատված կոներ, կոներ, կոներ... Գանգրահեր փոքրիկը, որը հազիվ հինգ-վեց տարեկան լիներ, ձեռքին մի քանի մուգ կարմիր կակաչներ ուներ, որոնցից յուրաքանչյուրում ասես նրա սևասև աչքերն էին արտացոլված: Փոքրիկին կոների այդպիսի առատությունը մեծ հրճվանք պատճառեց, որն իր գագաթնակետին հասավ, երբ ծառից, հենց ոտքերի մոտ, թրխկաց մի մեծ կոն:

— Հայրի՛կ, հայրի՛կ, նայիր որքա՜ն գեղեցիկն է,— նա ուրախ ճիչով հափշտակեց այն և սկսեց ուրիշները ևս հավաքել: Հավանաբար ինչ-որ տեղից ուշանում էին, որովհետև հայրը շտապեցնում էր նրան, բայց փոքրիկին հաճույքից չզրկելու և չըվշտացնելու համար ինքն էլ էր ընտրում լավագույն-

ները, մեծ բավականություն պատճառելով աղջընակին:

Փոքրիկի ձեռքերում էլ տեղ չկար, բայց ավելի ու ավելի գեղեցիկներն էին հանդիպում,ահա, զարմացնելով ինձ, նա նետեց ձեռքի ծաղիկները: Մի երկու կոն էլ վերցնելով, հանկարծ բոլորը գետնին դրեց և ետ վազեց: Ես ուրախությամբ ժպտացի, հավանաբար ափսոսեց հիանալի կակաչները: Աղջիկը հավաքեց դրանք, և մինչ մենք անսպասելի ու թ յ ու ն ի ց կսթափվեինք, կտրատեց թափեց ցած և վերադարձավ իր կոների մոտ:

— Ինչո՞ւ ոչնչացրիր ծաղիկները, — հարցրեց ապշահար հայրը: Եվ արարքից ավելի չար ու անսպասելի էր աղջնակի, այդ գեղեցիկ փոքրիկի պատասխանը.

— Թողնեի, որ ուրիշները գային, վերցնեի՞ն:

Մարդը կարկամեց մի վայրկյան. դեմքը կարմըրատակեց: Դա անդուր կարմրություն էր: Դա զայրույթի, ամոթի, նըվաստացման կարմրություն էր: Մարդը վիրավորվել էր սպանված գեղեցիկի համար, այն գեղեցիկի, որ ոչնչացվել էր իր հարազատ աղջկա, իր իսկ փոքրիկի կողմից: Այժմ նրա աչքերում մի հարց էր կարդացվում, մի այրող հարց՝ ինչպե՞ս, ինչպե՞ս չի նկատել, ինչպե՞ս է վրիպել, և ո՞վ կըմտածեր, այս ի՞նչ անհոգի բնավորություն է ձևավորվում իր փոքրիկի մոտ... Նա ծայրահեղ հուզմունքից ոչինչ չասաց աղջկան, գուցե և իմ ներկայությունը խանգարեց, բայց ես հավատացած եմ, որ նա՝ գեղեցիկը սիրող ու գնահատող այդ մարդը, հետո անպայման, անպայման անհրաժեշտը կասի նրան:

Սթափվելով, մարդը ձգեց աղջկա թևից, որը տարված կոների ողջ կույտը վերցնելու հոգսով, չէր էլ նայում նրան:

— Վերջացրո՛ւ, ուշանում ենք,— կտրուկ ասաց նա:

Ձայնի անսպասելի տոնը զարմացրեց աղջկան, ցանկացավ հակաճառել, բայց տեսնելով զայրույթը հոր աչքերում, անխոս հետևեց նրան:

Գետնին մնաց գեղեցիկ, ընտրովի կոների կույտը: Իսկ քիչ հեռվում թափված էին բըզկըտված ծաղիկները:

Ես, նայելով հեռացող աղջկա ետևից, ցանկանում էի բարձրաձայն աղաղակել.

— Կա՛նգ առ, փոքրի՛կ, երբե՛ք, լսո՞ւմ ես, երբե՛ք չսպանես գեղեցիկը, նա միայն քոնը չէ, նա իմն է, քոնն է, բոլորինն է:

Գեղեցիկը աշխարհինն է:





# ՄՈՐԵՂԲԱՅՐԸ

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մորեղբայրս վեց տարով մեծ էր ինձանից, սակայն հինգերորդ դասարանում ես հասա նրան, և մենք նստում էինք միևնույն նստարանին:

Ամեն օր արթնանում էինք միասին, միասին շտապում դպրոց, և նա ոչ մի օր դասը չէր պատրաստում, և ամեն անգամ պատմության ուսուցիչը ցուցամատը մեկնում էր դեպի ինձ.

—Արի՛ գրատախտակի մոտ, թող քեռիդ ամաչի:

Հաջորդ տարին արդեն ես մենակ էի դպրոց գնում: Մորեղբորս թափուր տեղն իմ կողքին գրավեց «Հոպոպ» մականունով տղան, որն ամենաուժեղն ու ամենածույլն էր նրանից հետո:

Մի օր, երբ դասարան մտա, տեսա, թե ինչպես Հոպոպը թանաքամանիս մեջ աղ է լցնում:

— Ի՞նչ ես անում,— ասացի:

— Ոչինչ,— պատասխանեց Հոպոպը:

— Թանաքամանիս մեջ աղ լցրիր:

— Չէ՛,— ասաց Հոպոպը:

Մեր շուրջը կամաց-կամաց հավաքվում էին:

— Լցրեցիր, ես տեսա:

— Հա՛, լցրի,— ասաց Հոպոպը,— դե գնա մատնի՛...

— Չէ՛,— ասացի ես,— Հոպո՛պ, չեմ մատնի... Մեռնես էլ՝ չեմ մատնի:

— Կմատնես,— և Հոպոպն ապտակեց ինձ:

Ես չէի սպասում այդ հարվածին: Շփոթված բռնեցի կարմրած այտս: Տղաները սկսեցին քրքջալ: Մինչև ուշքի կգայի, ուսուցիչս ներս մտավ և մենք վազեցինք դեպի նստարանները:

Դասերի վերջում հայտնվեց մորեղբայրս.

— Հիմա կգնանք դպրոցի այգին և դու Հոպոպին կծեծես:

— Չեմ կարող,— ասացի ես,— կռվել չեմ ուզում:

— Փիսո՜,— ասաց մորեղբայրս,— եթե չըծեծես, կսատկացնեմ:

. Գնացինք դպրոցի այգին:

Մորեղբայրս վերցրեց Հոպոպի գրքերն ու նրան հրեց իմ կողմը.

— Կռվի՛ր...

Հոպոպը մոտեցավ.

— Չեմ կռվի,— ասացի ես:

— Վախկոտի մեկն ես,— ջղայնացավ մորեղբայրս:

— Չեմ կռվի...

— Աշխատեմ, քեզ համար հեծանիվ կառնեմ:

Ես լռում էի:

— Գրքեր կառնեմ... Արկածային...



Պայուսակս հանձնեցի նրան: Ես ու Հոպոպը նայեցինք միմյանց:

— Սկսե՛ք,— ասաց մորեղբայրս:

Հոպոպը մոտեցավ ու հարվածեց դեմքիս: Ես նորից շփոթվեցի, ձեռքս տարա դեպի քիթս. արյուն էր գալիս: Մորեղբայրս հոգոց հանեց:

— Հը՛, էլի՞ կռվենք,— մորեղբորս նայեց Հոպոպը:

— Փիսո՛, կռվի՛ր, ի՞նչ ես շշմել,—կանչեց մորեղբայրս:

Հոպոպը մոտեցավ ինձ ու նորից ձեռքը բարձրացրեց: Օդում բռնեցի Հոպոպի ձեռքն ու փաթաթվեցինք միմյանց: Սակայն կարճ ժամանակում նա նորից ինձ հաղթեց ու տապալեց գետնին: Քթիցս արյուն էր հոսում, անզոր կատաղությունից շնչահեղձ էի լինում: Սկսեցի լաց լինել: Մորեղբայրս մոտեցավ, երկու ձեռքով բարձրացրեց ինձանից կառչած Հոպոպին ու շան ձագի նման շպրտեց մի կողմ:

Ինձ նույնպես բարձրացրեց, տարավ ծորակի մոտ, լվաց քիթ-մռութս ու քայլեցինք դեպի տուն:

— Բա որ բանակ տանեն՝ ի՞նչ ես անելու,— ասաց մորեղբայրս,— չէ, շատ ես թույլ: Մենակ դաս սովորելով բան չի ստացվի, պիտի ուժեղանաս:

Եվ սկսեց ուժեղացնել ինձ:

Ճանապարհն անցնում էր աղբյուրի մոտով: Մի գեղեցիկ ձի ջուր էր խմում ավազանից:

— Տեսնում ե՞ս ինչ լավ ձի է,— ասաց մորեղբայրս,— արի նստե՛նք:

— Թամբ չունի...

— Թամբած՝ պապս էլ կնստի: Տղամարդը նա է, որ առանց թամբի նստի:

— Դո՛ւ նստի,— ասացի ես:

— Ես կարող եմ, ես հեչ,— ասաց մորեղբայրս,— կարևորն այն է, որ դու նստես:

— Չեմ կարող...

— Ես ձին կքաշեմ քարի տակ, դու կնըստես,— ասաց մորեղբայրս ու մոտեցավ ձիուն:

Ձին մոտիկ թողեց: Մորեղբայրս սկսեց շոյել վիզը, բռնեց բաշից ու կամաց-կամաց քաշեց քարի տակ:

Բարձրացա քարին ու զգուշորեն տեղափոխվեցի ձիու վրա: Ձին մաշկը թրթռացրեց, փըռփըռացրեց, գլուխը թափ տվեց, բաշն ազատեց ու ծառս եղավ տեղում: Ես ամուր կառչեցի վզից: Մորեղբայրս քիչ էր մնում տրորվեր ոտքերի տակ, իրեն մի կողմ նետեց:

Ձին սլանում էր փողոցներով, մի անկյունից մյուսը նետվելով: Ես բարձրաձայն լաց էի լինում, ձիուն աղաչելով կանգ առնել: Մորեղբայրս վազում էր ձիու ետևից ու կանչում.

-- Հրա՜նտ, ամո՜ւր բռնիր, չվախենա՜ս, ձիերը խելոք կենդանիներ են... Չվախենա՜ս, գալի՜ս եմ...

Եվ մենք երեքով սլանում էինք գյուղի փողոցներով, մինչև ձին վերջապես ինձ նետեց մի ցանկապատից ներս ու անմիջապես կանգ առավ:

Երեկոյան տատս ու մորեղբայրս մեկիկ-մեկիկ հանում էին մարմնիս մեջ խրված փշերն ու շփում օղիով:

— Քո արածը կլինի,— մորեղբորս ասում էր տատս,— էս անմեղ երեխան էդպիսի բան չէր անի:

Ինչքան էլ ստիպեցին, չասացի, թե ինչպես է եղել, և գիշերը մորեղբայրս համբուրեց ինձ ու ասաց, որ կամաց-կամաց իսկական տղամարդ եմ դառնում:

Այդ օրվանից սկսեց ինձ ավելի սիրել: Չէր ծեծում: Երբ անտառ էր գնում, անպայման ինձ հետն էր տանում ու ծանր փայտեր էր դնում ուսիս, որ ավելի ուժեղանամ: Մեկ-մեկ էլ անտառում դիտմամբ ինձ կորցնում էր, որ մենակ մնամ, սովորեմ չվախենալ:

— Էսպես չի լինի,— մի օր ասաց պապս,— տասը տարում հինգ դասարան սովորեցիր: Մինչև ե՞րբ ես պարապ թրև գալու: Արմենակի հետ խոսել եմ, կգնաս շինարարություն, աշխատանքի կընդունի:

— Ի՞նչ աշխատանքի,— հարցրեց մորեղբայրս:

— Պրոֆեսորի տեղ է ազատվել,— քմծիծաղ տվեց պապս:

Մյուս օրը, երեկոյան մորեղբայրս վերադարձավ ու փռվեց մահճակալին: Տրամադրություն չուներ, ձեռքերի ափերը վառվում էին, ոտքերը տնքում:

— Հը՞, դժվար է՞ր,— ժպտաց պապս,— աշխատանքը տղամարդու գործ է: Ամեն մարդ տղամարդ չի, բա՞:

— Բոլորովին էլ դժվար չէր,— ասաց մորեղբայրս:

— Մի՞շտ, դժվար չէ՞ր,— հարցրի ես:

— Քեզ համար դժվար կլինի,— պատասխանեց մորեղբայրս,— դու դեռ փոքր ես:

Օրերն անցնում էին: Մորեղբայրս վերադառնում էր հոգնած, ափերի կոշտուկներն ավելանում էին, իսկ ինքը իմ աչքի առաջ օրեցօր առնականանում էր: Եվ ես, հիացած նրա տեսքով և ուժով, ամեն երեկո իմ բաժին հացի կեսը թաքուն դնում էի նրա ափսեի կողքին: Իսկ նա չնկատելու տալով ուտում էր, որովհետև, ինչպես պապս էր ասում, գայլի ախորժակ ուներ:

Ուղիղ տասներորդ օրը, երբ մտանք անկողին, մորեղբայրս հարցրեց.

— Ո՞նց են դասերդ:

Ես շատ զարմացա, որովհետև նա երբեք չէր սիրում դպրոցի մասին հիշել:

— Լավ են...

— Ի՞նչ գնահատականներ ես ստանում:

— «Հինգեր»... «Չորսեր»...

— Լավ սովորիր,— ասաց մորեղբայրս,— դու թույլ ես, շինարարության վրա չես կարող աշխատել:

— Դժվա՞ր է,— հարցրի ես:

— Ինձ համար դժվար չէ, բայց դու չես կարող: Առաջին աշխատավարձով քեզ համար հեծանիվ եմ առնելու:

— Դու հեծանիվ տեսել ե՞ս...

— Հա՛, Ալավերդի գնացած ժամանակ տեսա, շատ լավն էր, ճիշտ կինոյում տեսածի նման:

Ամսվա վերջին աշխատավարձ էր ստացել:

— Փող ես ստացել, հա՞,— հարցրեց պապս:



— Հրանտի համար հեծանիվ եմ առնելու։

— Ի՞նչ,— զգուշացավ պապս։

— Հրանտի համար,— ասաց մորեղբայրս,— խոսք եմ տվել։ Եթե խաբեմ, էլ ի՞նչ տղամարդ։ Դու ես ասում՝ տղամարդն իր խոսքից ետ չի կանգնի։

— Լսի՞ր... ականջդ կպոկեմ։

— Չէ՛,— կամաց-կամաց դռան կողմը շարժվեց մորեղբայրս։

— Ներս արի,— ձայնը բարձրացրեց պապս։

— Չեմ գա։

Պապս վերցրեց վառարանի տակ ընկած փայտն ու շպրտեց, բայց այն կպավ արդեն փակ դռանը։

— Տուն չգա՜ս,— կանչում էր նրա ետևից պապս,— եկար՝ էդ անհամ լեզուդ կտրելու եմ տամ շանը։

Մորեղբայրս անհետացավ, իսկ պապս նըստած վառարանի կողքին՝ դեռ երկար ժամանակ փնթփնթում էր.

— Հազար ու մի պակաս-պռատ կա... Քո ինչի՞ն է պետք, ա՛յ Հրանտ, էդ անտերը... Ուշքդ ու միտքդ գցելու ես վրան, դասերդ աչքաթող անես։

Երեք օր տուն չեկավ մորեղբայրս: Բոլորս սկսել էինք անհանգստանալ: Տատս նախատում էր պապիս: Չորրորդ օրը, երբ դպրոցից նոր էի վերադարձել, հայտնվեց հեծանիվի հետ:

— Ստացի՛ր, Փիսո՛:

Ես զարմացած կանգնել, նայում էի փայլուն ու գեղեցիկ հեծանիվին ու վախենում էի ձեռք տալ:

— Գնացի Ալավերդի, Կիրովական, չկար: Թիֆլիսից եմ բերում:

Ես լուռ շոյում էի հեծանիվի ղեկը:

— Արի՛ սովորեցնեմ,— ասաց մորեղբայրս:

— Կարո՞ղ ես...

— Բա ո՞նց, քշելով եմ եկել:

Նստեցի: Հրեց ու բաց թողեց: Ղեկն ըսկըսեց փախչել ձեռքիցս: Ոտքերս ու ձեռքերս միմյանց հետ համաձայնության չէին գալիս: Թափով խփեցի պատին:

— Ոչինչ, կսովորես,— ասաց մորեղբայրս,— կամաց-կամաց կսովորես:

Ես գյուղում առաջին հեծանիվ ունեցողն էի: Դասարանի տղաներն սկսեցին սիրել ինձ: Միայն Հոպոպն էր առաջվա նման հեռու մնում:

Մոտենում էին Նոր տարվա տոները: Անհամբեր սպասում էինք դեկտեմբերի երեսունմեկին, որ նվեր ստանայինք փոքրիկ թղթե պարկերով ու հոտ քաշեինք մանդարինի կըճեպներից:

Նոր տարվա տոնի նախօրյակին դպրոցի թերթում տպագրվեց իմ առաջին բանաստեղծությունը: Սակայն երբ կարդացի, չճանաչեցի՝ տասներկու տողից տասնմեկը հայոց լեզվի ուսուցչուհին էր գրել: Այնուամենայնիվ ես հպարտ-հպարտ քայլում էի միջանցքներով ու թվում էր, թե բոլորն ինձ են նայում:

Այս առիթով Հոպոպն իմ Փիսո մականունին ավելացրեց նաև «Վարժապետ» մականունը:

Մի քանի օր հետո մորեղբայրս ասաց.

— Փիսո՛, ուրեմն ոտանավորներ ես գրո՞ւմ:

— Հա...— մինչև ականջներիս ծայրը կարմրեցի:

Մորեղբայրս արդեն մի քանի ամիս է, ինչ անհույս սիրահարված էր Զորի թաղի Հասմիկին:

— Փիսո՛, մի լավ ոտանավո՛ր գրի, նվիրեմ:

— Իսկ նա քեզ սիրում է՞,— հարցրի ես:

— Չգիտեմ,— ասաց մորեղբայրս,— դեռ չեմ խոսել, մի լավ նամակ գրենք, կտանեմ կտամ:

Ամբողջ մի շաբաթ նամակ էինք գրում: Գրելուց հետո նամակը մի շաբաթ էլ մնաց մորեղբորս գրպանում:

— Լավ չի, որ ես տանեմ, Փիսո՛,— ասաց մորեղբայրս,— իմ մասին ի՞նչ կմտածի: Ավելի լավ է, դո՛ւ տար: Հեծանիվով կգնաս, տան մոտ կսպասես, հենց դուրս գա, կմոտենաս, կհանձնես:

— Չսպասե՞մ, տեսնեմ ինչ է ասում:

— Չէ՛,— ասաց մորեղբայրս,— տուր ու արի՛: Կարևորն այն է, որ նամակը կարդա, հետո ամեն ինչ լավ կլինի:

Նամակը տարա, հանձնեցի:

Առավոտյան Հասմիկն ինձ բռնեց դպրոցում:

— Փիսո՛, հլա արի այստե՛ղ, փոստատա՞ր ես աշխատում,— և անխղճորեն քաշեց ականջըս:

— Բա՛ց թող,— ճչացի,— ես քեզ ի՞նչ եմ արել:

— Էդ դու էիր գրե՞լ, թե՞ ինքը,— մեղմացավ Հասմիկը:

— Ինքը:

— Քո ձեռագիրն էր...

— Ինքն էր գրել:

— Շինարարությունում է աշխատո՞ւմ...

— Հա՛:

— Հետո՞...

— Չգիտեմ:

— Ասա՛ էլ նամակ չգրի... Լեզու չունի՞...

— Ունի,— ասացի ես:

Ամեն ինչ պարզ էր, բայց մորեղբայրս չէր համարձակվում մոտենալ: Հենց տեսնում էր նրան, լեզուն բռնվում էր: Սկսում էի մտածել, որ այնքան էլ ուժեղ չէ: Իսկ Հասմիկն ինձ հանդիպելիս ժպտում էր:

Աշնանը մորեղբորս բանակ էին տանելու: Նրան արդեն կանչել էին բժշկական ստուգման, և գնդապետը թփթփացնելով նրա մեջքին, ասել էր.

— Լավ զինվոր կլինի:

Եվ հիմա, մենք հպարտ-հպարտ, քայլում էինք գյուղի փողոցներով: Մորեղբայրս սովորեցնում էր, թե ինչպես պետք է պահեմ ինձ իր բացակայության ժամանակ: Ես չպետք է ոչ մեկից վախենամ, պետք է շարունակեմ ուժեղանալ և, որ ամենակարևորն էր, պետք է աչքս Հասմիկի վրա պահեմ:

Երբ Երևան տանող գնացքը դուրս եկավ դիմացի ոլորանից, մորեղբայրս գրկեց ինձ ու ասաց.

— Փիսո՛, քեզ այնպես կպահես, որ չխայտառակվենք:

Պապս ու տատս լուռ նայում էին արդեն մոտեցող գնացքին: Իսկ մի քիչ հեռվից Հասմիկը թաքուն նայում էր ու տխուր-տխուր ժպտում:

# ԵՐԱԶՈՂԸ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Երազները գունավոր են,
Խորհրդավոր, թովի՜չ, թովի՜չ,
Երազները թևավոր են,
Կկտրեն ձեզ հողից, ծովից,
Թևին կառնեն ու կտանեն,
Յոթ երկինքներ ձեզ կհանեն:

Եվ նման են նրանք գույն-գույն,
Լույս հավքերի,
Նվագների քաղցրահնչյուն
Ու երգերի,
Հեռո՜ւ-հեռվից անուշ հնչող
Ոսկի զանգի:
Անիմաստ է կյանքը առանց
Երազանքի...
Բայց չպիտի կյանքում, տղա՛ս,
Երազներով միայն տարվել.
Երազանքի հետ միասին
Պետք է քրտնել ու չարչարվել:
Ա՛յ, մի տղա գիտեի ես,
Երազող էր զարմանալի:
Իր անունն էլ, որ Քաջիկ էր,
Ավելի՛ էր զարմանալի:
Դեռ փոքրիկ էր, երազում էր
Դառնալ խիզախ հրշեհաշեջ:
Մեկ էլ տատը՝ վա՜յ, տնաշեն,
Դու գլխիցդ ձե՞ռ ես քաշել,
Քեզ գցում ես կրակի մեջ:
Հետո տղան ուզեց դառնալ
Որմնադիր կամ ճարտարապետ:
Իսկ հայրը թե՝ հեռո՛ւ մնա,
Գործ չունենս քար ու հողի հետ:
Հետո բժիշկ ուզեց դառնալ,
Իսկ տատը թե՝ վա՜յ, քոռանամ,
Ախր, դու մի տան ճրագ ես,
Հիվանդներից կվարակվես...
Ուզեց դառնալ նա օդաչու,
Իսկ մայրը թե՝ ինչո՞ւ, ինչո՞ւ,
Գետնի վրա գործ չկա՞ քեզ,
Հա որ վերից հանկարծ ընկնես...
Ա՛յ, կուզեի ես, Քաջի՛կ ջան,
Որ դառնայիր դու գեներալ.
Բայց դե, որդի՛ս, դրա համար
Նախ պիտի քաջ զինվոր դառնալ:
Իսկ թե հանկարծ կռվում զոհվես...
Չէ՛, չէ՛, այդ էլ չեմ ուզում ես:

Ու Քաջիկը նորից բռնեց
Երազանքի անծիր ճամփան.
Քնեց-զարթնեց, զարթնեց-քնեց.
Դարձավ անփույթ, ծույլ ու անբան:
Մեկ էլ, թե ի՛նչ խելքին փչեց,
Ուզեց դառնալ նա բանաստեղծ:
Նստած տանը, օր ու գիշեր
Երազում էր ու գրոտում,
Արտասանում անկապ խոսքեր
Ու մի գլուխ թուղթ մրոտում:
Այդ թղթերը հայրն ընթերցեց,
Ընթերցեց ու տարակուսեց.
— Գրածիդ մեջ, կյանքս վկա,
Խելքի մոտիկ բան չտեսա...
Անմիտ, անկապ խզբզանքներ,
Սատանան բան կհասկանա՞...

Իսկ Քաջիկը մեր՝ անտարբեր,
— Մի՛ զարմանա,— ասաց,— ա՛յ հեր,
Այսպիսին է հիմա մոդան...
Հասկանան թե չհասկանան,
Եթե տպվեց՝ հո կկարդան...

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*Բանասիրության դոկտոր*

## 18. Ի՞ՆՉ Է ՆՈՐԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԻՆՉՊԵ՞Ս Է ԼԻՆՈՒՄ, ՈՐ ՆՈՐԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԴԱՌՆՈՒՄ Է ՀՆԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

Նորաբանություն (օտար լեզվով՝ նեոլոգիզմ, կազմված հունարեն նեոնոր և լոգոս-բան, խոսք բառերից) կոչվում են նոր հայտնված բառերը, ոճերն ու դարձվածքները:

Ինչո՞ւ են դրանք գոյանում. այն պատճառով, որ կյանքում հայտրնվում են նոր երևույթներ, նոր առարկաներ և հրամայաբար պահանջում են իրենց անվանումները: Երբ այդ առարկաներն ու երևույթները պահպանվում են կյանքում՝ իրենց անվանումներն էլ պահպանվում, մուծվում են կենդանի լեզվի բառապաշարը, իսկ երբ չեն պահպանվում՝ այդ անվանումներն էլ «մեռնում» են անհետացող առարկաների ու երևույթների հետ, դառնում հնաբանություն:

Լեզուն, այսպիսով, իր մեջ է առնում նորահայտ բառեր ու արտահայտություններ, դուրս է մղում հները, երկու դեպքում էլ կյանքի հրամայականով, անհրաժեշտության թելադրանքով:

Այսպես լեզուն արտացոլում է կյանքի հարափոփոխ ընթացքը՝ վերին աստիճանի ուշագրավ երևույթ ոչ միայն լեզվի, այլև կյանքի ուսումնասիրության տեսանկյունից:

Դատենք օրինակներով:

Անցյալ անգամ մտաբերեցինք բառեր, որոնք հնաբանություններ են, բայց ժամանակին եղել են նորաբանություններ: Դրանց շարքում՝ լիկկայան, բանֆակ, խրճիթ-ընթերցարան բառերը: Եթե ձեզ հարցնեն, թե դրանք ինչ են նշանակում՝ հազիվ թե կարողանաք պատասխանել: Բայց տեսեք, թե դրանց ստուգաբանությունն ինչեր կարող է պարզել:

Ժամանակին՝, 20-ական թվականներին, մեր երկրում ստեղծվեցին լիկկայաններ՝ լիկվիդացիոն կայաններ: Ի՞նչ էին լիկվիդացնում, վերացնում այդ կայանները: Անգրագիտությունը: Դրանք հիմնվում էին չափահաս մարդկանց գրագետ դարձնելու համար: Հիմա, համատարած գրագիտության մեր երկրում՝ այլևս ի՞նչ լիկկայաններ: Դրանք մեռան, իրենց անվանումն էլ՝ իրենց հետ: Մեր երկրի զարգացման նույն այդ շրջափուլում ըստեղծվեցին նաև բանֆակներ՝ բանվորական ֆակուլտետներ: Ինչի՞ համար էին դրանք: Բանվորներին և գյուղացիներին, բարձրագույն դպրոց ընդունելու նպատակով, արագացված ուսում տալու համար: Հիմա, երբ մեր երկրում միջնակարգ կրթությունը պարտադիր է, իսկ բարձրագույն դպրոց ընդունվելու համար գլուխ են կոտրում՝ այլևս ի՞նչ բանֆակներ: Եվ դրանք մեռան, իրենց անվանումն էլ՝ իրենց հետ: Միայն 20-ական, 30-ական թվականների կյանքը պատկերող գրվածքներում կարող եք հանդիպել լիկկայան ու բանֆակ բառերին, և դրանց իմաստն իմանալու համար պետք է դիմեք հայոց լեզվի բացատրական բառարանի օգնությանը: Կըհանդիպեք նաև խրճիթ-ընթերցարան

հարաղրությանը: Վաղուց արդեն մեր գյուղերում խրճիթ-ընթերցարանի տեղը գրավել են գրադարանները, ակումբները, մշակույթի պալատները: Եվ ժամանակին իբրև ամենաթարմ նորաբանություն հայտնված խրճիթ-ընթերցարան հասկացությունը դարձել է կատարյալ հնաբանություն:

Տեսնո՞ւմ եք, թե ինչպես այս մի քանի բառի ստուգաբանությունը մեզ տեղյակ դարձրեց մեր երկրում կատարված հասարակական տեղաշարժերին:

Այսպես՝ ամեն մի լեզու, եթե նա ապրող, զարգացող ժողովրդի լեզու է, շարունակաբար իր մեջ է առնում նոր բառեր, նոր ոճեր ու դարձվածքներ, հետո կա՛մ հրաժեշտ է տալիս, եթե դրանք կորցնում են իրենց ոտքի տակի հողը, կա՛մ էլ կայունացնում իր գործածական բառապաշարում, եթե դրանք պահպանում են իրենց կենսական կարևորությունը:

Բառերն էլ, մարդկանց պես, իրենց ճակատագիրն ունեն՝ զարմանալի և անկրահելի:

Քչերը գիտեն, որ ռուսաց լեզվի բառապաշարում այնքան հիմնավոր տեղ գտած, կարծես այդ լեզվի հետ ստեղծված *человечность*, *общественность*, *явление*, *промышленность* և ուրիշ բառեր 18-րդ դարում տարակուսանք հարուցող նորաբանություններ էին: Դրանք ստեղծել և կիրառության մեջ էր դրել Ն. Կարամզինը՝ բարձր ճաշակի, հարուստ իմացությունների տեր մի գրող: Բայց նորաբանություններ ստեղծվել և ստեղծվում են շարունակ և բոլոր ժամանակներում, քանի որ կյանքը նոր հասկացությունների, նոր անվանումների պահանջ առաջադրում է շարունակ:

Այսպես, մեր իսկ աչքի առաջ ըստեղծվեց տիեզերագնաց նորաբանությունը և հաստատորեն մտավ մեր բառապաշարի մեջ: Կարելի է վստահորեն ասել, որ այդ բառը կմնա գործածության մեջ, քանի որ տիեզերքի նըվաճման բուն երևույթը գնալով կըզարգանա: Այդպես էլ հեռուստատեսություն, հեռացույց, հեռատեսիլ, հեռուստադիտող նորաբանությունները խուժեցին մեր լեզվի մեջ այնքան անսպասելի ու հիմնավորապես, որքան «անսպասելի» ու հիմնավորապես հեռուստատեսությունը մտավ մեր կենցաղի մեջ:

Լեզուն իր զարգացման օրենքներն ու օրինաչափություններն ունի: Դրանցից մեկն այն է, որ նա իր հիմնական բառապաշարի մեջ է առնում ու պահպանում բուն կյանքի մեջ հիմք ու հեռանկար ունեցող նորաբանությունները: Դրանք գոյանում են շարունակ, կյանքի զարգացման պահանջների համեմատ: Բայց բոլոր բառաստեղծումները չեն, որ կոչվում են նորաբանություններ: Կան, և չափազանց շատ, բառաստեղծումներ, որոնք ունեն մասնավոր, «տեղական» նշանակություն, դրանք կարող են ստեղծվել մի որևէ պատեհ առիթով և օգտագործվել թեկուզև մի անգամ՝ առանց լեզվի հիմնական բառապաշարը մուծվելու հավակնության:

Դրանք պատեհաբանություններ են կոչվում, օտար լեզվով՝ օկազիզմներ, ստեղծված լատիներեն occasio —դեպք բառի հիման վրա:

Ամենից հետաքրքիրն այն է, որ դըրանց հեղինակները կարող են լինել ոչ միայն գրողները, այլև մեզնից ամեն մեկը և ամեն քայլափոխի, նույնիսկ թոթովախոս երեխաները: Ինչո՞ւ նույնիսկ, հատկապե՛ս երեխաները՝ ամենից հեշտ ու ամենից լավ հենց նըրանք են հորինում նորանոր զարմանալի բառեր: Մեր հաջորդ զրույցը կընվիրենք դրան:

# ՊԱԼԱՏԻ



Պատանի բնասերների շնորհիվ պալատի ապակեպատ ճեմասրահը տարվա բոլոր եղանակներին կանաչապատ պուրակ է հիշեցնում:



[...]ում հաճախ են գեղանկարչական ու քանդակագործական ցուցահանդեսներ բացվում: Պատանի քանդակագործները իրենց լավագույն գործերը նվիրում են դպրոցներին, մանկապարտեզներին և մանկական այլ հիմնարկներին:

Հ[...]արուստ և բա[...]ցովան[...]դակ է Երևանի Շ[ա]հումյանի շրջանի պիոներպալատի առօրյան: Այստեղ գործում են երեսունութ տեսակի 185 խմբակներ, որոնց անդամագրված երեխաները խորացնում են դպրոցում ձեռք բերած գիտելիքները, ծանոթանում արվեստի կամ տեխ[նի]կայի այս կամ այն ճյուղին: [Պի]ոներների և դպրոցականների, [...]նատիպ աշխատանքների շնորհիվ պալատը դարձել է մայրաքաղաքի տեսարժան վայրերից մեկը, պալատի սաների ստեղծագործությունները ցուցադրվել են նաև մեր Միության տարբեր քաղաքներում ու արտասահմանում: Բայց թերևս ամենից կարևորն այն է, որ պալատը երեխաներին օգնում է կողմնորոշվելու ապագա մասնագիտության ընտրության հարցում: Միայն քանդակագործական խմբակն ավարտած երեխաներից քառասունը այսօր աշխատում կամ սովորում են այդ ուղղությամբ:



Պալատի երիտասարդ խմբակներից է գորգագործականը։ Երեխաները հաճույքով են զբաղվում այդ հնագույն արվեստով։ Նրանց գործած գորգերը ցուցադրվել են ԱՄՆ-ում, մեդալներ շահել Մոսկվայի ԺՏՆՑ-ում։





Ավիամոդելիստների խմբակի անդամները մի քանի անգամ հաղթող են ճանաչվել հանրապետական տարբեր մրցումներում։

Փայտի փորագրության արվեստը պալատ է մուտք գործել ընդամենը 5 տարի առաջ։ Պատանի փորագրողները շարունակում են հնագույն վարպետների ավանդները։

# ՇՆՈՐՀԱԼԻՆԵՐԸ

# ՌԻԿԿԻ ՇԱՆ

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ



## 2. ՏԱՐՕՐԻՆԱԿ ՄԻՋԱԴԵՊ

Առավոտյան պարզվեց, որ Տիգրանը նույնպես ամբողջ գիշեր անհանգիստ է եղել: Ամեն անգամ, երբ Ռիկկին մոտեցել է խոհանոցի դռանը ու երբ կրկին վերադարձել պատշգամբի իր անկյունը (թեև անաղմուկ), Տիգրանը արթնացել է: Աշխատանքի գնալուց առաջ նա Ռիկկիին պետք է տաներ բակ՝ կարիքների համար: Տարավ և տասը րոպեից ետ բերեց: Դեռ պետք է նախաճաշեր, դեռ պետք է քառասուն րոպե ավտոբուսով գնար:

— Մինչև քո գալը ո՞վ պետք է սրան տիրություն անի,— հարցրեց մայրը:

— Իր անկյունում կմնա,— ասաց Տիգրանը,— ես կգամ, կտանեմ զբոսանքի:

Մայրը չէր հավատում, որ շունը այդքան խիստ է վարժված ռեժիմին: Բայց հետո զարմանքով ու տխրությամբ նկատեց. շունը, կարծես հասկանալով, իրեն պահում էր այնպես, որ մարդիկ նրան թույլատրեն ապրել իրենց տանը: Տիգրանի գնալուց քիչ առաջ, աշխատանքի գնաց հայրը, հետո հորաքույրը, որը ձևացնում էր, իբր, շատ անտարբեր է շան հանդեպ: Եվ ընդհանրապես, երևի ճիշտ էր, որ նա իրեն մի քիչ հեռու էր պահում ընտանեկան վեճերից ու խոսակցություններից: Համենայն դեպս, դեռ արդուզարդի սեղանի մոտ, Տիգրանին լսելի ձայնով ասաց.

— Զբոսայգիներում հանգիստ քայլել չի լինում: Ամեն ծառի, ամեն թփի տակից մի շուն է դուրս պրծնում: Ես զարմանում եմ, թե Երևան քաղաքի միլիցիան ի՞նչ է մտածում: Երեխաները կարող են հոգեկան տրավմա ստանալ:

Տիգրանը չլսելու տվեց:

— Մայրի՛կ, չմոռանաս Ռիկկիի ջրամանը ջուր լցնել,— ասաց ու գնաց:

Մայրը դեռ ժամանակ ուներ՝ սենյակներն ավլելու չափ: Տանը ոչ մի շարժում չկար: Այս շունն ո՞ւր կորավ: Պատշգամբն ավլելիս մայրը տեսավ, որ այնտեղ չէ: Մտավ որդու ննջարանը: Ռիկկին չկար: Ավլելով հասավ մահճակալին, ու երբ ավելը մտցրեց մահճակալի տակ, մի այնպիսի՜ չարացած հաչոց լսեց. անակընկալի եկած մայրը քաշեց ավելը:

— Ռի՛կկի, դո՛ւրս արի,— հրամայեց նա:— Ռի՛կկի, քո տե՛ղը, շո՛ւտ:

Ռիկկին կծկվել էր անկյունում: Մայրը տղայի օրինակով հրամանը կրկնեց: Ոչ մի շարժում: Գուցե պատահականությո՞ւն էր. նա նորից ավելը մտցրեց մահճակալի տակ: Ռիկկին այնպես գազազեց, այնպես գռմռաց, այնպես չարացած ճանգռեց հատակը: «Սա ավելից վախենում է,— որոշեց մայրը,— եթե շարունակեմ, ավելի վրեժը ինձանից կհանի»,— ու մաքրելը կիսատ թողնելով՝ գնաց:

Երեկոյան, երբ բոլորը հավաքվել էին սեղանի շուրջը, մայրը, գաղտնիք բաց անողի շեշտով, ասաց.

---

Սկիզբը՝ № 9-ում:

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

*Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*

— Ռիկկին սոսկալի վախենում է ավելից, կատաղած հարձակվում է ավելի վրա:

— Չի կարող պատահել,— ասաց Տիգրանը:— Երբ ես նրան տարել էի զբոսանքի, իրենից մեծ շան վրա հարձակվեց և նա պոչը քաշած ծլկեց: Ավելն ի՞նչ է, որ ավելից վախենա:

— Փորձի՛ր,— ամաց մայրը,— փորձի՛ր, որ համոզվես:

Տիգրանը վերցրեց ավելը ու գնաց պատշգամբ: Ռիկկին պուկ՝ ննջարան, մահճակալի տակ: Տիգրանն ավելը մտցրեց մահճակալի տակ, ու չարացած և կատաղած Ռիկկի շունը այնպես հարձակվեց Տիգրանի վրա, որ նա ավելը ձեռքին փախավ սենյակից: Դրանից հետո, ննջարանն ավլելիս, Ռիկկիին փակում էին պատշգամբում, իսկ պատշգամբը մաքրելիս, քշում էին ննջարան: (Իսկ ավելի ուշ, երբ շունը դարձյալ տնից տուն էր թափառում, նոր տիրոջը զգուշացնում էին. չմոռանաս, հա, Ռիկկին ավելից սարսափելի վախենում է):

— Տեսնես ինչո՞ւ է վախենում,— հարցրեց մայրը:

Տիգրանը ուսերը վեր քաշեց. իբր, ի՞նչ իմանամ:

Հայրը, որ Ռիկկիի հարցում չեզոք դիրք էր բռնել, հայտնեց իր կարծիքը.

— Երբ փոքր է եղել, երևի ավելը վրան են ջարդել:

Իսկ հորաքույրն ասաց.

— Գուցե շանը թվում է, թե ավելը չար գազան է և կարող է իրեն վնասել: Կամ էլ՝ քըսքըստոցն ազդում է ջղերի վրա: Ի վերջո իսպանական թագուհու շան ցեղից է սերված:

Վերջին խոսքերը նա ասաց քմծիծաղով և դրանով ուզում էր խոցել Տիգրանին, որը առիթը բաց չէր թողնում հիշեցնելու Ռիկկիի երևելի ցեղից սերված լինելը:

— Ավելի փորձված շուն պահողներին պետք է հարցնել,— եզրափակեց մայրը:

## ԿՅԱՆՔԸ ՎՏԱՆԳԻ ՏԱԿ Է

Տիգրանենց տանը Ռիկկին մնաց երկու շաբաթ: Ամբողջ օրը փակված էր բնակարանում և երեք անգամ՝ հազիվ մի քանի րոպեով դըրսում: Այն օրը, երբ Տիգրանի մայրը հատակին մաստիկա էր քսել, շունը հարբածի նման օրորվելով էր շարժվում: Մայրը նկատեց, որ շունը բուրդը տալիս է: Երբ Տիգրանը աշխատանքից եկավ, մայրն ասաց.

— Վերջապես հասկացի՛ր, շունը բուրդը տալիս է. մազը տարածվել է բնակարանով մեկ:

Հայրը և հորաքույրը հրաժարվեցին լողասենյակից օգտվել, որովհետև Տիգրանը Ռիկկիին լողացնում էր այնտեղ, և երբ ցնցուղի տակից հանում էր, չէր հասցնում չորացնելու փալասը վրան գցել. շունը այնպես էր ցայվում-թափահարվում, որ ջուրը ցայտում էր պատերին ու սրբիչներին, հայելուն և ատամի խոզանակներին: Ամեն ինչ խառնվել էր իրար, և Տիգրանի համար էլ, տնեցիների վերաբերմունքի ու շանը խնամելու հոգսի պատճառով, բավականություն համարյա չէր մնացել:

Ինչ Ռիկկիին բերել էր, հայրը պատշգամբ չէր գնում և պատշգամբի թախտին չէր պառկում: Իսկ դա նրա հանգստի հաճելի անկյունն էր:

— Չե՞ս նկատում, հորդ համբերությունը հատնում է,— մի օր ասաց մայրը:

Վանինե մայրիկը վախենում էր, օրերից մի օր հոր և որդու միջև ընդհարում կարող է տեղի ունենալ: Չէ՞ որ երբ հայր ու որդի վիճում են, մայրերը չգիտեն, թե ում կողմը բռնեն, ու դրա համար նրանց վիճակը սոսկալի ծանրանում է: Եվ որպեսզի վեճը կանխվի, խեղճ մայրերն ավելի շատ պարտականություն են վերցնում իրենց վրա, քան թե ի վիճակի են կատարել:

— Նվիրի՛ր մեկին, ազատվենք, վերջանա գնա,— հորդորում էր նա տղային,— բայց այնպիսի մեկին, որը կարողանա զբաղվել կամ էլ գոնե տունը միհարկանի լինի ու բակ ունենա: Թե չէ բերել ես բանտարկել հինգերորդ հարկում:

Հետո, կես կատակ, կես լուրջ՝

— Գիտե՞ս, թե անգլիացիներն ինչքա՞ն են սիրում կենդանիներին ու ինչքա՞ն լավ են խնամում: Թե որ իմանան դու այսպես տանջում ես շանը, քո դեմ մեղադրանք կհարուցեն: Նվիրի՛ր, ասում եմ, նվիրի՛ր մեկին, հոգիներս ազատվի:

Այդպես էլ եղավ: Մի շաբաթ անց Ցողինար անունով մի աղջիկ եղբոր հետ եկավ նրանց տուն: Տիգրանը թերթի մեջ փաթաթեց Ռիկկիի «ներքնակը» ու կաշեփոկը վերջին անգամ իր ձեռքով անշտապ ու խնամքով ամրացրեց շան վզին:

«ՎԱՅ» ՀԱՅՈՑ ԼԵԶՎԻՑ...»

# ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒ



Ինչպես ամեն մի մարդու, այնպես և ամեն մի հայի համար իր մայրենի լեզվից քաղցր ու հարազատ լեզու չկա: Շատ ենք լսել, թե ինչպես է հուզվում օտարության մեջ գտնվող հայը, երբ հանկարծ մայրենի լեզվով խոսակցություն է լսում: Ցավոք, մենք մեր այդ գանձի նկատմամբ անփույթ ենք: Մեր շրջապատում լեզուն աղավաղելու դեպքերը շատ են... Ի՞նչ թաքցնեմ, բավական է մաքուր հայերենով մի նախադասություն արտասանես, սկսվում է ծիծաղը, տեղիք տալիս արամրտության և նույնիսկ չարախոսության: Անցյալ կոմերիտական ժողովում, 10-րդ դասարանցի մի կոմերիտական խոսեց ինչպես հարկն է, այսինքն մաքուր հայերենով և ընկավ ծիծաղի և շըշուկների տարափի տակ: Հետո ամփոփված

«Ռի՛կկի, ես մեղավոր չեմ: Էլ ճար չկար»,— այդ պահին մտածում էր Տիգրանը:

Երբ քույր ու եղբայր անչափ ուրախացած այդպիսի շքեղ նվերի համար՝ շնորհակալություն էին հայտնում, առաջին օրվա նման թախիծը համակել էր մորը: Հիմա նա էր մեղավորի նման կանգնել միջանցքում, որտեղ շունը թեթև պտույտներ գործելով հոտոտում էր հատակը և չէր վազում դուրս, ինչպես սովորաբար անում էր, երբ Տիգրանը նրան տանում էր զբոսանքի: Ու դրա համար էլ Ծողինարն ու իր եղբայրը միասին կաշեփոկը քաշում էին, որպեսզի մի կերպ Ռիկկիին տանեն իրենց հետևից: Շունը վիզը թեքել էր ու նայում էր Տիգրանի մորը, իսկ նա արագ դուռը փակեց, որպեսզի խուսափեր շան տխուր հայացքից:

Անցան օրեր, շաբաթներ:

Ռիկկին ընտելացել էր Ծողինարին ու նրա եղբորը՝ Սահակին: Թեև նրանք էլ էին բազմահարկ շենքում ապրում, բայց դուռ-դռան վրա հարևանը նույնպես երեխաներ ուներ, և օրվա տարբեր ժամերին շանը նրանք էլ էին խնամում:

Մի օր Ծողինարը Ռիկկիին տանում էր իր մորաքրոջ տուն: Նա պետք է հասներ բանուկ մի խաչմերուկ, այնուհետև մեկ ուրիշը և տեղ կհասներ: Կեսօր էր և փողոցը լիքն էր ամեն տեսակ ավտոմեքենաներով: Իրար ետևից անցան երկու տրոլեյբուս, ապա զրնգալով սլացավ տրամվայը: Հետո՝ բեռնատարների մի շարան: Այդ մեծ ավտոմեքենաների արանքում «Զապորոժեցները», «Վոլգաները» ու «Ժիգուլիները» կարծես խաղալիք լինեին: Ծուխը և բենզինի հոտը բռնել էր փողոցը: Կանաչ լույսի ժամանակ Ծողինարը չհասցրեց անցնել ու Ռիկկիին քաշելով փողոցի կեսից ետ դարձավ մայթ: Քիչ անց, երբ դարձյալ անցել էին տրոլեյբուսներ, երկու տրամվայ ու տասնյակ «Ժիգուլիներ», ու երբ փողոցում ծուխը, աղմուկն ու բենզինի հոտը ամպի նման կանգնել էր, Ծողինարը դարձյալ քաշեց Ռիկկիի կաշեփոկից: Երևի նա մի քիչ ամուր էր ձիգ տվել կամ էլ խեղճ շունը շփոթվել էր երթևեկության խառնությունից և կամ էլ, ով գիտի, ծխից ու բենզինի հոտից գազազել-կատաղել էր: Ռիկկին էլ իր հերթին ձիգ տվեց վիզը և պոկվելով Ծողինարի ձեռքից, վազեց խաչմերուկի կենտրոնական մասը: Այդ ժամանակ արդեն հակառակ ուղղությամբ լուսազդանշանի կանաչ լապտերն էր վառվում, և դրա համար այդ ուղղությամբ պահում էին ավտոբուսները, տրոլեյբուսներն ու «Երազները»: Հսկա «Իկարիուսները» հատկապես սև ծուխ ու մուր էին արտաշնչում և այդ ամենի կենտրոնում՝ Ռիկկին...

«Իկարիուսի» վարորդը հազիվ կարողացավ արգելակել, և դրանից ռետինե անվադողերն այնպես ուժեղ ճռռացին-ճռնչացին, որ անցորդ-

սկսեց խոսել «ծիծաղողների լեզվով», դրանով էլ վրդովեց ուսուցիչներին: Անելիքը չասած, նա ամոթից կարմրած՝ նստեց:

Շատ անգամ ենք փորձել գոնե դպրոցում խոսել գրական հայերենով, բայց, ավա՜ղ, մեր փորձերը միշտ էլ ապարդյուն են անցել: Այժմ որոշել ենք մինչև վերջ պայքարել, խոսել և մեր ընկերներից էլ պահանջել, որ խոսեն մաքուր, գեղեցիկ հայերենով:

*ՄԱՐԻՆԵ ԲԱԿՈՒՆՑ*
*Գորիսի շրջ., գ. Վերիշեն,*
*8-րդ դաս.*

# ԻՆՉՊԵ՞Ս ՎԱՐՎԵԼ

Մայրիկիս հետ մի անգամ հյուր էինք գնացել: Հյուրընկալի և նրա քսաներկուամյա տղայի հետ երկար զրուցելուց հետո մայրիկիս ասացի.

— Մամա՛, վե՛ր կաց գնանք, արդեն ուշ է:

Երիտասարդը ոտքից գլուխ չափելով ինձ, շըպըրտեց.

— Հեչ չեմ սիրըմ, օր էս աղճիգը ըղենց քաղաքավարի է բըթըմ: Ոնց որ իրա հավնողները ստեղ կանգնած են:

Առաջին անգամ չէր, որ նա նման բան էր ասում: Գիտեի, որ հակաճառելն իմաստ չունի, լռեցի: Դե ինչպե՞ս բացատրես նրա նմանին, որ մաքուր հայերենով խոսելը որևէ այլ նպատակ չի հետապընդում, բացի հարգանքից դեպի մայրենի լեզուն:

*ԳԱՅԱՆԵ ՄԿՐՏՉՅԱՆ*
*Էջմիածին, Ակնալիճ ավան, 8-րդ դաս.*

---

ներ փշաքաղվեցին ու մատները խցկեցին ականջները: Ռիկկին փախավ աջ, այնտեղ երկու մարդատար մեքենա հազիվ շեղեցին իրենց ճամփան: Եվ դա այնքան անսպասելի էր, որ ետևից եկող վարորդը, չհասկանալով, թե ինչի համար են իրենից առաջ գնացողները խուճապի մատնվել, չհասցրեց դանդաղեցնել ընթացքն ու իր մեքենայի քթով կպավ դիմացի մեքենային:

Խեղճ Ծողինար, այնպես էր կարկամել, որ նույնիսկ իր սեփական շանը կանչել չէր կարողանում: Երբ մեքենաներից մեկնումեկը շեղում էր իր ճամփան, նրան թվում էր, ուր որ է Ռիկկիին կճզմի անիվը: Նա փակում էր աչքերը և ձեռքի ափով սեղմում բերանը: Ահաբեկված անցորդները կանգնել էին ու չգիտեին ինչպես օգնել խեղճ աղջկան ու կենդանուն: Վերջապես լուսազդանշանի կարմիր լապտերը օգնության հասավ, և երբ մեքենաները դադարեցրեցին ընթացքը, Ծողինարը վազեց ու բռնեց ասֆալտին քարշ եկող կաշեփոկը: Նա այնքան էր վախեցել ու այնպես էր լալիս, որ մորաքրոջ տուն գնալու մասին մոռացավ: Անցորդները կշտամբում էին նրան, որ վտանգի է ենթարկել իր կյանքը: Եվ, որ ամենից կարևորն է, կարող էր մեծ ավտոաղետի պատճառ դառնալ:

Ծողինարը Ռիկկիին քաշելով, լացակումած գնում էր տուն, ու դեռ չգիտեր, որ վերջին ճամփորդությունն է իր սիրելի շան հետ: Երբ տուն հասավ ու երբ հայրը տեսավ նրա այլայլված, կտավի պես սպիտակած դեմքը, հարցրեց.

— Այդ ի՞նչ է պատահել:

Աղջիկը պատմեց եղելությունը:

— Հազիվ փրկվեցինք: Կամ ես էի ընկնելու անիվի տակ, կամ էլ Ռիկկին:

Հուզմունքից հոր լեզուն կապվել էր: Քըրտինքը տվել էր ճակատին ու շրթունքները դողում էին: Բայց նա ավելի խիստ զայրացավ այն ժամանակ, երբ լսեց, որ երկու ավտոմեքենա խփել են իրար, և որ վարորդներից մեկը Ծողինարի տան հասցեն վերցրել է:

— Այս գործն այսպես չի վերջանա,— ասաց նա:— Վաղվանից Ռիկկիին չտեսնեմ:

Ծողինարի ականջներում դեռ հնչում էին անցորդների կշտամբանքն ու վարորդների գոռգոռոցը: Նրա աչքին երևում էին իրար հաջորդող լուսազդանշանները. կարմիր, կանաչ, դեղին... Աղմուկից, խառնաշփոթությունից, բենզինի հոտից ու ծխից նա սրտխառնուք էր զգում և սարսռում էր: Իսկ Ռիկկին կուչ էր եկել դռան ետևում, կոշիկների արկղի մոտ, դունչը դրել էր հատակին և պոչը բոլորովին չէր շարժում: Կարծես զգում էր, որ հոր և աղջկա խոսակցությունն ավարտվելու է իր համար ոչ բարենպաստ որոշումով:

*(Շարունակելի)*

«ԼՈՒՍԱԲԵՐ»-ից

## Խելոք հաշիվ

Մի աղքատ տղա կանգնել էր փռան առջև ու ախորժակով նայում էր տաք-տաք բլիթներին:

Մտնում է ներս ու հարցնում.

— Ի՞նչ արժե բլիթը:

— Վեցը՝ հինգ կոպեկ:

— Վեցը՝ հինգ կոպեկ, հա՞. ուրեմն հինգը՝ չո՞րս կոպեկ, չորսն էլ՝ երեք կոպեկ, երեքը՝ երկու, երկուսը՝ մեկ, իսկ մեկը՝ անփող: Մեկը ինձ հերիք է. տվե՛ք ինձ մեկը:

## ԾԻՐԱՆՆԵՐ

Սեղանի վրա դրված էր մի զամբյուղ ծիրան:

— Ձեռք չտաք,— ասավ հայրիկը,— ճաշից հետո միասին կուտենք:

Փոքրիկ Գրիգորը սեղանի շուրջը պտտվում էր: Տանեցիք դուրս գնացին թե չէ, մի ծիրան թոցրեց ու թաքուն կերավ:

Ճաշի ժամանակ հայրիկը հարցրեց.

— Երեխե՛ք, ձեզանից մեկնումեկը հո ծիրան չի՞ կերել:

— Ո՛չ, հայրի՛կ,— կանչեցին բոլորը միաբերան:

Գրիգորն էլ թեև կարմրեց՝ բայց նույնպես ասավ «ոչ»:

— Լավ է որ այդպես է,— ասավ հայրիկը,— թե չէ այս ծիրանը մի այնտեսակ կորիզ ունի, որ ով ուտի, անպատճառ կհիվանդանա:

Գրիգորը գունատվեց ու կանչեց.

— Չէ՛, հայրի՛կ, ես կորիզը չկերա, պատուհանից դուրս գցեցի:

Հենց այդ կորիզն էր, որ հայրիկը տեսել էր պատուհանի տակ:

## Եղնիկի տերը



Որսկանը սարերում որսի էր ման գալիս: Մին էլ ժայռի ետևից դեմն է նետվում մի սիրուն եղնիկ:

Եղնիկը շշկլած կանգնում է, մնում աչքերը գցած որսկանի աչքերին:

Որսկանը նշան է դընում, որ սպանի:

Հանկարծ առջևը հայտնվում է մի սիրուն կին՝ սարի ոգին ու ձայն է տալիս:

— Կանգնի՛, անիրավ. մի՛ սպանի իմ եղնիկին: Դու ապրում ես, սա էլ պիտի ապրի:

Որսկանը սարսափած ետ է գալիս տուն, հրացանը կախում է պատից ու այն օրվանից թողնում է որսկանությունը:



*Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ*

# ԱՌԱՎՈՏ

ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

Քո շնչառությունից
Արթնանում են թռչունները
Մառերի մեջ քնած,
Ամպերը արտացոլվում են
Ջրերի մեջ:

Լույսերը կաթկթում են
ամպերից,
Անլսելի մի ձայնից
Փախչում է երազը
Իմ արյան միջով:

Ես ուզում եմ գրկել
Հորիզոնից հորիզոն ձգվող
Քո ուսերը,
Ես ուզում եմ զգալ շունչը
Քո կապույտ թոքերի մեջ լցված:

Բայց իմ ձեռքերը շատ են փոքրիկ
Քեզ գրկելու համար
Եվ շատ է ցավում
Լույսից ու կարոտից փոթորկված
Իմ արյունը:

# ՄԵՂԱՎՈՐ ԵՆՔ ՈՉ ՄԻԱՅՆ ՄԵՆՔ...

Այս դեպքը պատահեց 7-րդ դասարանում: Երրորդ քառորդի վերջին օրն էր: Շուրջը ամեն ինչ կանաչին էր տալիս. կարծես բնությունը մեզ իր գիրկն էր կանչում: Կանգնում ես դասարանում, լուսամուտի առաջ, նայում դիմացի սարին ու մտքով պլանում այնտեղ: Ու երբ սթափվում ես, ափսոսանքով մտածում. «Արժե՞ այսպիսի գեղեցիկ եղանակին նստել դասարանում»: Երևի այսպես էին մտածում բոլորը, և դասարանում շշուկներ լսվեցին.

— Փախչենք դասերից... կազմակերպենք էքսկուրսիա դեպի մեր դպրոցի դիմացի սարը:

Չանցած հինգ րոպե, ամբողջ դասարանով (բացառությամբ երկու տղայի) քայլում էինք «Արջի» սարը տանող ճանապարհով:

Տեղ հասանք: Ամբողջ ճանապարհին մեզնից անբաժան էր զրնգուն ծիծաղը: Մեզ երբեք բախտ չէր վիճակվել դասարանով գնալ էքսկուրսիա: Չնայած որ դպրոցում անցկացված մրցույթի ժամանակ շահել էինք սահմանված պարգևը՝ «Հեռավոր էքսկուրսիա»: Այդ էքսկուրսիան այդպես էլ չիրականացավ: Երկու ժամ խաղալուց հետո, որոշեցինք վերադառնալ դպրոց և վերցնել պայուսակները: Բայց այստեղ մեր ուրախությունը վերածվեց թախծի, ծիծաղը՝ լացի: Ուսուցիչները մեզ նախատեցին ինչպես հարկն էր ու դեռ մի բան էլ ավելի: Մինչդեռ դասարանական առաջին այդ էքսկուրսիան մեծ տպավորություն էր թողել մեզ վրա: Այնքան մեծ, որ դասարանի ոչ մի աշակերտի հիշողությունից երբեք չի ջնջվի:

Անա թե ինչու, հաջորդ քառորդին, երբ եկանք դասի, փախուստին չմասնակցող տղաներին արհամարհանքով էինք վերաբերվում:

Անցավ մեկ տարի: Դասարանում նորից շշուկներ լսվեցին փախուստի մասին: Իհարկե, տղաները փախան, իսկ աղջիկները մնացին: Ի պատիժ տղաների, նրանց վարքը օրագրում նշանակվեց բավարար:

Այդ դեպքից հետո տղաները մեզ անվանում էին «դավաճաններ» ու արհամարհում: Դասարանը բաժանվեց երկու մասի՝ տղաների և աղջիկների: Տղաները նստում էին մի կողմի, իսկ աղջիկները մյուս կողմի վրա: Ժպիտը փախել էր դասարանից: Ծանր վիճակ էր ստեղծվել: Այդպես շարունակվելու դեպքում կարելի էր խելագարվել:

Մեղքը վերցնելով մեզ վրա՝ աղջիկներով տղաներին խնդրեցինք, որ ներեն: Դրանից հետո կարծես թե որոշակի արդյունքի հասանք: Մի քիչ բարելավեցինք մեր հարաբերությունները տղաների հետ: Բայց ես մտածում եմ, չէ՞ որ մենք դրանում մեղք չունեինք, ինչու՞ տղաները նեղացան մեզանից:

Մեղավոր են դասարանի և՛ տղաները, և՛ աղջիկները, մասամբ էլ գուցե մեր մանկավարժները, որ մեզ համար էքսկուրսիաներ չեն կազմակերպում:

*ԳԱՅԱՆԵ ԱԼԱՎԵՐԴՅԱՆ*
*Գորիս, № 1 դպր., 8-րդ դաս.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.** — Սիրելի՛ դպրոցականներ, Գայանե Ալավերդյանի նամակը խորհելու տեղիք է տալիս: Մտածեցինք պատասխանել, սակայն նպատակահարմար գտանք պատասխանը թողնել ձեզ: Գրեցեք նաև ձեր դասարանի մասին:

# Ո՞Վ Է ՃԻՇՏ, Ո՞Վ՝ ՍԽԱԼ

Ի՜նչ խոսք, դասարանում անհաշտությունը լավ արդյունքներ տալ չի կարող: Հազիվ թե անհաշտ դասարանում առաջադիմությունն ու կարգապահությունը բարձր մակարդակի վրա լինեն:

Բայց ահա, վերցնենք մեր դասարանը: Ինչպես մյուս բարձր դասարաններում, մերում նույնպես աղջիկները գերակշռում են. քսանչորս աշակերտներից միայն յոթն են տղա: Ճիշտ է, աղջիկների ու տղաների փոխհարաբերությունները շատ լավ են, բայց մեր աղջիկներից շատերը այն կարծիքին են, թե լավ հարաբերությունների համար անհրաժեշտ է ամեն ինչում պաշտպանել տղաներին: Նրանք թաքցնում են տղաների դասից փախչելու դեպքերը, թույլ տված անկարգությունները: Երբ ուսուցիչը, այնուամենայնիվ, իմանում է այդ մասին, դարձյալ ամեն կերպ փորձում են պաշտպանել նրանց: Դրանից տղաները թեվավորվում են: Ի՞նչ լավ փոխհարաբերություններ, եթե դասին չհուշեն, նրանց փոխարեն տնայիններ ու շարադրություններ չգրեն: Այսպես են հասկանում շատերը լավ փոխհարաբերությունները:

Իսկ ես մտածում եմ, որ նման դեպքերում անհրաժեշտ է չհանդուրժել և անհաշտ լինել նրանց վատ արարքների նկատմամբ: Ճի՞շտ եմ կարծում, թե՞ սխալվում եմ:

*ՍԻՐՎԱՐԴ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ*
*Թումանյանի շրջ., Շնողի դպր., 9-րդ դաս.*

## Գիտե՞ք որ...

1784 թվին մի ճապոնացի՝ Խունասայուկի Մատուսյամա անունով, իր մի քանի ընկերների հետ նավ է նստում և գնում գանձ որոնելու: Նրանց նավը, սակայն, խորտակվում է, և նրանք ընկնում են Խաղաղ օվկիանոսի փոքրիկ կղզիներից մեկը: Այդտեղ քաղցից ու ծարավից մեռնում են նրանք: Խունասայուկին մեռնելուց առաջ մի տախտակի կտորի վրա քերծելով գրում է իրենց հետ պատահած դժբախտ պատմությունը, գցում է մի շշի մեջ, շշի բերանը փակում և նետում ջուրը: Օվկիանոսը անհավատալի ճշտությամբ տանում և այն գյուղի մոտ, որտեղ ծնվել է Խունասայուկին, ափ է նետում շիշը... 150 տարի հետո:

Ամենից շատ երկրաշարժեր տեղի են ունենում Ճապոնիայում: 1959 թվին այդտեղ գրանցվել է 980 երկրաշարժ, բայց դա համարվում էր բացառիկ հանգիստ տարի: 1980 թվին գրանցվել է 5744 երկրաշարժ:

Նոր Գվինեայում կան հսկա թիթեռներ, որոնց թևերի չափերը հասնում են 25 սանտիմետրի: Տեղացիները շատ բարձր են գնահատում նրանց միսը:

Հյուսիսային Աֆրիկայում կա ծառի մի տեսակ, որին կոչում են «Սատանի ծառ»: Նրա կեղևը պարունակում է մեծ քանակությամբ ֆոսֆոր, որը ուժեղ լույս է արձակում: Գիշերը կարելի է նստել ու այդ ծառի լույսի տակ ազատ գիրք կարդալ:

# ԾԻՏԻԿԸ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ









ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ

1.

Լավ չեմ հիշում՝
Դրսում ցու՞րտ էր,
Թե՞ քամի էր,
Բայց գիտեմ, որ
Վաղ ժամի էր...

Ոչ մեզ նման
Հերթ խնդրելով,
Տոմս կտրելով,
Այլ բոլորից
Թաքուն, անտես,
Ծիտիկն եկավ
Ցուցահանդես:

Հայոց հրաշք
Լեռը վրան,
Կամարակապ
Բարձր դռան
Վերին ճեղքից

Ու պատկերներ
Լուսապսակ.
Քարե մարդիկ,
Քարե հորթեր,
Դեղին, անծայր
Ցորենարտեր,
Հասուն մրգեր,
Գորգեր՛ նախշուն,
Միանգամից՝
Ամառ-աշուն:
Միանգամից՝
Գարուն-ձմեռ,
Ե՛վ բորբ արև,
Ե՛վ պաղ ձյուներ...
Ե՛վ ամեն բան՝
Ինչ-որ ուզեք.
Ջրեր մթին,
Լեռներ կան սեգ...
Եվ հռվողեց

4.

Խեղճ ծիտիկի
Աչքը շլվեց,
Քունը տարավ,
Թևը փլվեց,
Եվ դեռ անթիվ
Երգեր փորում,
Խոր քուն մտավ
Մի սափորում:

5.

Երբ արթնացավ,
Սոված էր խիստ,
Դեմը արտն էր՝
Մեծ, ոսկեքիստ:
Հատիկները՝
Համով ու մեծ:
Պրկեց թևը,
Ինքը փքվեց,

Խոփը կտցեց,
Գորգի վրա,
Խաչքարի տակ...
Արքայական
Ջրահ ու թագ...
— Վա՜յ, կորած ենք,-
Հավար գցեց...
Շարը կտցեց,
Սուրը կտցեց,—
Այնքան կտցեց,
Այնքան կտցեց,
Մինչև փոքրիկ
Մի դուռ բացեց,
Ծիտը թռավ
Դռան միջով
Ծիտիկային
Վայ ու ճիչով:

7.

Ձեզ եմ ասում,





Նա մտավ ներս:
Բան կար մտքում
Այդ ծիտիկի՝
Կապտապուտիկ
Ու մոխրագույն:

2.

Եվ ինչպես որ
Մարդ հեքիաթում
Իր տեսածին
Չի հավատում,
Այդպես էլ նա՝
Ծիտիկն այդ խեղճ,
Զարմանք կտրեց
Հեքիաթի մեջ:

3.

Գույներ, գույներ
Ամեն տեսակ

Ջրում ձորի
Երգ էր երգում,
Արտում արտի
Երգ էր երգում,
Ծկկացնում էր
Ու ճկճկում:

Այնքան թռավ,
Այնքան երգեց,
Մառը շոյեց,
Թուփը գրկեց,
Ճչաց ծաղկի
Զվարթ գույնով,
Հրճվեց ձիու
Խենթ վարգումով,
Նայեց թռավ,
Թռավ նայեց,
Ամեն բանով
Խոր հմայվեց:

Արտի վրա,
Որ կուտ ուտի
Վրա-վրա:

6.

Կտցեց: Ոչինչ:
Կտցեց: Ոչինչ:
Փորձեց իջնել
Ջրի մեջ ջինջ,
Ջուրն էլ չկար
Հասկի նման:
Անհետ կորած.
Ազգի նման
Պատկերը կա,
Ինքը չկա:
Եվ ծիտիկը
Դարձավ ագահ՝
Մառը կտցեց,
Թուփը կտցեց,
Քարը կտցեց,

Այս պատմությունն
Իրական է
Ամեն ինչով:

Ծիտը ծառին
Նստեց երկար
Եվ օդի մեջ
Դարձավ նկար:

Հիմա նայե՛ք
Պատուհանից՝
Ծիտը այնտեղ
Կախվել ծառից,
Արմանք-զարմանք
Ձեզ է նայում,
Քանի որ դուք
Նկարներ եք
Ծիտիկների
Թանգարանում:





Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ








# 2. ՏԻԵԶԵՐՔԻ ԿՂԶԻՆԵՐԸ

Պարզ և անլուսին գիշերներին լավ տեսանելի է աստղացիր երկինքը գոտևորող ու աղոտ առկայծող մշուշանման հետքը: Ժողովուրդը նրան Հարդագողի ճանապարհ անունն է տվել, իսկ գիտականորեն անվանում են Ծիր Կաթին: Աղամանդե փոշեհատիկներից հյուսված շղարշի նման, Ծիր Կաթինն անկրկնելի գեղեցկությամբ օղակում է ողջ երկնակամարը, ասես շարունակ հիշեցնելով այն բոլոր առասպելներն ու ավանդությունները, որ հյուսել են իր մասին աշխարհի բոլոր ժողովուրդները...

Սակայն առասպելներն ու ավանդությունները, որքան էլ գրավիչ լինեն, գիտական բացատրություն չեն տալիս երևույթներին: Ուստի, սկսած վաղ հնադարից, աշխարհի ճանաչմանը նվիրված մարդիկ ջանում էին հասկանալ, թե ի՞նչ է ներկայացնում իրենից Ծիր Կաթինը:

Մեր թվարկությունից մոտավորապես 500 տարի առաջ Աթենքում ապրում էր հին հունական փիլիսոփա և բնագետ Անաքսագորաս Կլազոմենցին: Մեզ հասած տեղեկությունների համաձայն, նա առաջիններից մեկն էր, որ պնդում էր, թե Ծիր Կաթինն իրենից աստղային լույս է ներկայացնում: Ծիր Կաթինը չափազանց հեռու գտնվող մեծ քանակությամբ աստղերի բազմություն է, ասում էր նա: Այդ և աշխարհի կառուցվածքի մասին նրա մյուս հայտարարությունները հասցրին այն բանին, որ նա մեղադրվեց անաստվածության մեջ ու դատապարտվեց մահվան: Եվ միայն Աթենքից ընդմիշտ հեռանալով, խուսափեց պատժից: Սակայն նրա փոխարեն իր ուսմունքը մնաց քաղաքում և արդեն կարող էր զարգանալ նաև առանց իր ստեղծողի...

Անաքսագորաս Կլազոմենցու ժամանակներից անցավ երկու հազար տարի: Անաքսագորասի հայրենիքի հարևանը՝ Հռոմեական կայսրությունը վաղուց արդեն Իտալիա էր վերանվանվել, և այնտեղ արվեստների ու գիտության մեծ վերածնունդ էր: Միջնադարի երկարատև խավարից հետո մարդկությունն ասես շտապում էր ետ բերել կորցրածը: Իրենց բազմաթիվ գիտափորձերով արդեն հայտնի էին դարձել Լեոնարդո դա Վինչին ու Գալիլեո Գալիլեյը, որոնցից վերջինի անվան հետ է կապված մեր պատմության հաջորդ փուլը:

Լինելով խոշորագույն մտածող, Գալիլեյը իրականության ճանաչման հիմք էր համարում գիտափորձերը, որոնց շնորհիվ կարողացավ ֆիզիկայի բնագավառում ժամանակակից գիտական մոտեցման հիմքը դնել: Գալիլեյի կատարած խոշորագույն աստղագիտական հայտնագործությունները կապված էին իր իսկ ստեղծած աստղադիտակով կատարած դիտումների հետ: Հիմա շատ դժվար է պատկերացնել այն մեծ հուզմունքը, որ համակել է նրան, երբ առաջին անգամ նկատել է Յուպիտերի արբանյակները, պարզորոշ տեսել մոլորակների սկավառակներն ու Լուսնի խառնարանները: Դրանք մարդու համար բոլորովին նոր տեսարաններ էին, դեռ ոչ ոք նման բան չէր տեսել:

Նույնքան անսպասելի ու գերող տեսարան բացվեց նրա առջև, երբ նա իր դիտակն ուղղեց Ծիր Կաթինի վրա: Ասես հրաշքով, արծաթափայլ աղոտ ամպի փոխարեն նրա դիտակի մեջ տարբեր պայծառության հազարավոր աստղեր հայտնվեցին: Իսկ այդ աստղերի թիվն այնքան շատ էր, որ դրանց համեմատությամբ նույնիսկ պարզ գիշերներին անզեն աչքով երևացող աստղերի բազմությունը պարզապես չնչին էր թվում...

Ծիր Կաթինի ուսումնասիրության երկհազարամյա ժամանակաշրջանը մնաց ետևում, վերջապես անվիճելիորեն ապացուցվեց նրա աստղային բնույթը: Եվ, ընդհանրապես, պարզվեց, որ երկնքում աստղերն անհամեմատ ավելի շատ են, քան տեսնում ենք: Սակայն նրանք բաշխված են շատ անհավասարաչափ: Ծիր Կաթինի նեղ գոտում է գտնվում աստղերի հիմնական զանգվածը: Իսկ այդ փաստն իր հերթին նույնպես բացատրություն էր պահանջում:

Երբ 1724 թվականին գերմանական Քյոնիգսբերգ քաղաքում ծնվեց Էմանուել Կանտը, աստղագետներին վաղուց արդեն զբաղեցնում էր աստղերի անհավասարաչափ բաշխվածության փաստը: Տասնվեց տարեկան հասակում Կանտն ընդունվեց իր հայրենի քաղաքի համալսարանը, նպատակ ունենալով աստվածաբան դառնալ: Սակայն նրան վիճակված չէր ծառայել աստվածաբանությանը, որովհետև շատ շուտով հրապուրվեց մաթեմատիկայով ու ֆիզիկայով, որոնք էլ որոշեցին նրա հետագա աշխատանքների ուղղությունը: Դրանց արդյունքը դարձան ինչպես գերմանական դասական իդեալիզմի ծնունդը, այնպես էլ բնագիտական մի շարք հետաքրքիր վարկածներ: Այդ վարկածների թվում էր նաև Ծիր Կաթինի կանտյան բացատրությունը:

Ենթադրենք, ասում էր նա, թե բոլոր աստղերը, որ մենք տեսնում ենք, Արեգակի հետ միասին մտնում են մի հսկա համակարգի մեջ, որը տափակ սկավառակաձև կառուցվածք ունի: Քանի որ սկավառակի տրամագիծն անհամեմատ ավելի մեծ է նրա հաստությու-

---

*Սկիզբը՝ № 9-ում:*

նից, ապա դիտելով սկավառակի հարթության ներսը մենք անհամեմատ ավելի շատ աստղեր կտեսնենք, քան մակերևույթներին ուղղահայաց ուղղություններով: Իսկ սկավառակի ներսից նրա հարթությունների միջև ընկած մասը երևում է դիտողին գոտևորող օղակի և հետևապես նաև Ծիր Կաթինի նման: Իսկ թե ինչո՞ւ մենք չենք տեսնում աստղերից կազմված այդ սկավառակն այնպիսին, ինչպիսին որ կա նա, դժվար չէ հասկանալ. մենք գտնվում ենք նրա ներսում, իսկ ներսից նրա արտաքինը տեսնել, բնական է, հնարավոր չէ: Բայց արդյոք մեր աստղային համակարգն իսկապե՞ս սկավառակաձև տեսք ունի: Այդ հարցը դեռ պատասխան էր պահանջում...

Աստղագիտության մեջ նոր ժամանակաշրջանի սկիզբը կապվեց գերմանական բանակային նվագախմբի հոբոյահար Վիլհելմ Հերշելի անվան հետ: Մեծ բարեբախտություն էր նաև այն, որ նա ևս երկար չզբաղվեց իր մասնագիտությամբ: Բանակային երաժշտի անհեռանկար աշխատանքը շատ արագ ձանձրացրեց նրան, ծառայությունը թողնելով, նա տեղափոխվեց Անգլիա: Այստեղ ևս նա որոշ ժամանակ տրվեց երաժշտությանը, ապա աստիճանաբար հրապուրվեց աստղագիտությամբ ու լրիվ նվիրվեց իր նոր կոչմանը: Որոշ ժամանակ անց նա իր գերմանական անունը ևս փոխեց անգլիական արտասանության համար ավելի բարեհնչյուն Վիլյամ անունով, որով և մնաց պատմության մեջ:




1785 թվականին Հերշելն արդեն դիտումներ էր կատարում իր հանրահայտ «քսան ոտնաչափանոց» դիտակով և հայտնի էր դարձել աստղագետների շրջանում: Մեր աստղային համակարգի կառուցվածքի ու տեսքի բացահայտման խնդիրը լուծելու նպատակով նա ընկրկեց տևական մի աշխատանք՝ Ծիր Կաթինի տիրույթների աստղերի հաշվումը: Մի քանի տարի շարունակ մաս առ մաս հետազոտում էր աստղերի այս հսկա բազմությունը: Եվ վերջապես նրա տքնաջան աշխատանքը պսակվեց հաջողությամբ: Նա կարողացավ ապացուցել, որ մեր աստղային համակարգը, որը Ծիր Կաթինի հունարեն անունով Գալակտիկա կոչվեց, իսկապես ունի սկավառակաձև, տափակ կառուցվածք: Սակայն այդ դիտումներն ու հաշվարկներն այլ բան տալ չկարողացան, դեռ պարզ չէին Գալակտիկայի իրական չափերը, տեսքի մանրամասնությունները և այլն: Իսկ աստղագետներին արդեն դրանք էին հետաքրքրում:

Դեռևս Կանտը, առաջ քաշելով մեր Գալակտիկայի կառուցվածքի վերաբերյալ իր տեսությունը, ենթադրում էր նաև, որ Տիեզերքում գոյություն ունեն բազմաթիվ այդպիսի համակարգեր՝ «տիեզերքի կղզիներ» նույնպես, որոնց մեջ է կենտրոնացած աստղային ողջ բնակչությունը: Իսկ եթե դրանք իսկապես գոյություն ունեն, մի՞թե մենք չենք կարող մեր Գալակտիկան ինչ-որ ձևով նմանեցնել դրանցից մեկնումեկին...

Երբ տասնհինգերորդ դարի պորտուգալական ծովագնացները սկսում էին մոտենալ աֆրիկյան մայր ցամաքի հարավում գտնվող Բարեհույս հրվանդանին, հարավային կիսագնդի գիշերային երկինքը նրանց դիմավորում էր արծաթափայլ երկու ամպիկներով, որոնք հար և նման էին Ծիր Կաթինին, ասես նրա մոլորված կտորներն էին: Այդ ամպերը ծովագնացների համար ծառայում էին իբրև նշան, որ նրանք արդեն շրջանցում են Աֆրիկան: Դրանք առաջին անգամ գրավոր նկարագրվել են պատմիչ Պիթագետայի կողմից, որը աշխարհահռչակ Մագելլանին ուղեկցում էր 1518—1521 թվականների շուրջերկրյա ճանապարհորդության ընթացքում: Դրանից հետո այդ ամպերը գրականության մեջ մնացին իբրև Մագելլանի Մեծ ու Փոքր ամպեր...

Մենք այդ ամպերը չենք տեսնում, քանի որ դրանք գտնվում են երկնքի հարավային կեսում և մեր հայացքներից պաշտպանված են Երկիր մոլորակով: Սակայն փոխարենը հնարավորություն ունենք տեսնել նույնատիպ մի այլ, բայց համեմատաբար շատ ավելի աղոտ ամպաձև մշուշ: Միայն շատ մութ ու պարզ



# ՊԱՐԾԵՆԿՈՏԻ ՎԱԽՃԱՆԸ

*ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ*

Ձնհալներից
Առուն ծնված,
Լեռան լանջով
Հոսում էր ցած:
Հպարտանում
Ինքն իրենով,
Թե ես մի օր
Կդառնամ ծով:
Կծածանեմ
Երկնքի տակ
Ալիքները
Իմ կապուտակ:
Սակայն լցվեց
Նա մինչև վերջ,
Խորը փորված
Մի փոսի մեջ:
Իսկ արևի
Շողիկն եկավ
Պարծենկոտին
Այսպես ասավ.
— Ի՞նչ ես կանգնել
Խեղճ ու կրակ,
Չես ծածանում
Երկնքի տակ
Ալիքները
Քո կապուտակ:—
Եվ առվակը
Ոչինչ չասաց,
Փոսում կորած
Ցամաքել էր՝
Ծով չդառած:



*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

գիշերներին կարելի է Անդրոմեդայի համաստեղությունում զանազանել այդ թույլ միգամածությունը: Նույնիսկ աննշան ամպամածության կամ երկնքի չնչին լուսավորվածության դեպքում հնարավոր չէ տեսնել այն:

Մագելլանի ամպերի նման, Անդրոմեդայի միգամածությունը նույնպես Ծիր Կաթինի մոլորված պատառիկի է նմանվում: Ինչպես ցույց տվեցին հետագա ավելի մանրամասն դիտումները, այդ նմանությունը պատահական չէ: Թե՛ Մագելլանի ամպերը և թե՛ Անդրոմեդայի միգամածությունը գտնվում են մեր Գալակտիկայի սահմաններից դուրս և նույնպես կազմված են բազմամիլիոն աստղերից: Այս երեք տիեզերական օբյեկտները տեսանելի էին նաև անզեն աչքով: Իսկ հզոր աստղադիտակների օգնությամբ հայտնաբերվեցին միլիարդավոր ուրիշ «տիեզերքի կղզիներ», որոնք գտնվում են անհամեմատ ավելի մեծ հեռավորությունների վրա: Հաշվի առնելով նրանց որակական նմանությունը մեր Գալակտիկային, բոլորը այդպես էլ անվանվեցին՝ գալակտիկաներ:

Այսպիսով, մենք վերջապես գտանք այն օբյեկտները, որոնց կողքից նայելով մենք կարող ենք որոշակի պատկերացում կազմել նաև մեր Գալակտիկայի կառուցվածքի ու արտաքին տեսքի մասին: Իսկ դրանց մասին կխոսենք հաջորդ անգամ...

# ՈՐՔԱ՜Ն ՀԵՇՏ Է ԵՐՋԱՆ

*ԱՆԱՏՈԼԻ ԱԼԵՔՍԻՆ*

Այն տունը, որտեղ տատիկս էր ապրում, արդեն չկա: Նրա հաշվին լայնացրին փողոցը... Ես կարծում եմ, որ տատիկս դրա համար ուրախ կլիներ: Ընդհանրապես նա կարմանալի բնավորություն ուներ... Օրինակ, նրան դուր էր գալիս, որ հինավուրց պատշգամբը ոչ թե խաղաղ բակին էր նայում, այլ կախված էր գիշեր-ցերեկ չլռող մայթի վրա:

— Գոնե գիտես ինչի վրա գցես քո պառավական անքնությունը,— ասում էր տատիկը:

Նա չորս աղջիկ ուներ: Բայց միայն իմ մայրիկն էր տատիկի հետ նույն քաղաքում ապրում: Եվ ոչ միայն նույն քաղաքում, այլև անկյունադարձից ուղղակի երեք քայլի վրա: Ավելի ստույգ՝ քանյոթ քայլի վրա... Մի անգամ ես հաշվեցի քայլերիս քանակը տատիկի տանից մինչև մեր տուն:

— Լավ է, որ մենք միասին՝ միևնույն բնակարանում չենք ապրում,— ասում էր տատիկը:— Երեխա ժամանակվանից սիրում եմ հյուր գնալ: Դիմավորում են,. ճանապարհ դնում... Ուշադրություն ցուցաբերում:

Հյուր գնալ նա սիրում էր ոչ միայն ոտքով, այլև փոխադրական միջոցներով: Հաճախ էր հիշում, թե ինչպես տարիներ շարունակ ամառները իր ուսուցիչ եղբոր մոտ հյուր՝ էր գնում գյուղ: Եղբայր ասածը մորաքրոջ որդին էր: Բայց տատիկի պատմածներից դատելով հարազատ եղբոր պես էր դիմավորում իրեն: Այդ դեռ պատերազմից առաջ... Իսկ պատերազմից հետո նա եղբորն այլևս հյուր չէր գնում, որովհետև եղբայրը զոհվել էր պատերազմում:

— Նա ամենաբարին էր մեր ընտանիքում,— ասում էր տատիկը:— Եվ ոչ



# ԿԱՑՆԵԼԸ

թե որովհետև լռիվել է... Ես առաջ էլ այդ էի ասում նրա մասին:

Նոր տարուց առաջ տատիկը միշտ հույսով սպասում էր, թե ուրիշ քաղաքներում ապրող աղջիկները կկանչեն նրան իրենց մոտ: Նա նույնիսկ խանութներում խաղալիքներ էր ընտրում թոռներին տանելու համար:

Աղջիկները շնորհավորական բացիկներ էին ուղարկում: Գրում էին, որ շատ են կարոտել: Սիրում էին տատիկին: Եվ, երևի, ուղղակի գլխի չէին ընկնում... Իհարկե, ես կարող էի այդ ամենի մասին նրանց գրել: Եվ մի անգամ արդեն հաստատ պատրաստվել էի... Բայց տատիկն ինձ թույլ չտվեց:

— Ես լսել եմ, որ հուշելու համար «երկո՞ւս» են նշանակում:

— Նշանակում են,— պատասխանեցի ես:

Այն հեռավոր տարվա նախօրեին, որի մասին ես հիմա պատմելու եմ, մեր դպրոցի վեցերորդ դասարանցիները կուլտարշավ էին գնում: Եվ թեև ճանապարհը դեպի մանկական թատրոն էր տանում, մենք, ինչպես ամեն մի արշավի ժամանակ, մեր հրամանատարներն ունեինք՝ ծնողական խորհրդից մի մայրիկ և երկու դասղեկ:

Դրանից մի երեք օր առաջ պարզվեց, որ վեցերորդ «Բ»-ին, այսինքն՝ մեկ, պարտերի տոմսեր են հասել, իսկ վեցերորդ «Ա»-ին՝ բելետաժի, թեև նա ոչընչով մեր դասարանից վատ չէր: Ինձ նույնիսկ թվում էր, թե ավելի լավն էր, քանի որ այնտեղ էր սովորում Գալյա Կոպլովան:

Նա նկարչական խմբակի ավագն էր: Ես նկարել չէի կարողանում, բայց ցուցակագրվեցի այդ խմբակում: Իմ դպրոցական կյանքի բոլոր վեց տարիներին նա միայն մեկ անգամ դիմեց ինձ: Դպրոցի պատանի նկարիչների ցուցակը կազմելիս, հարցրեց. «Որտե՞ղ ես ապրում»: Եվ ես մոռացա մեր փողոցի անունը... Ահա թե բանն ուր էր հասել:

Շուտով թողեցի նկարչական խմբակը, որովհետև հասկացա, չի կարելի վերջինը լինել սիրած էակի աչքի առաջ: Իսկ ինձնից վատ, ցավոք, խմբակում ոչ ոք չէր նկարում...

Մանկական թատրոնի ներկայացման համար երկու տոմս էի գնել: «Կմոտենամ Գալյային,— մտածում էի և, իբրև թե ի միջի այլոց, կասեմ. «Ես մի ավելորդ



տուն ունեմ: Ավելի լավ է պարտեզում նստել, քան բելետաժում: Եթե ուզում ես, վերցրու...» Եվ ամբողջ ներկայացման ժամանակ նրա կողքին կնստեմ: Այդպես կավարտվի տարին... Եվ այդ կլինի իմ ողջ կյանքի ամենաերջանիկ օրը»:

Դասերի ժամանակ և նույնիսկ գիշերները ես մտովի փորձեր էի անում. «Կողքից կանցնեմ, կբարևեմ... Մի բան կհիշեմ, կվերադառնամ... Իսկ այնտեղ, պարտեզում, ես նրան իմ ծրագիրը կառաջարկեմ: Նա կնկարդա այն, ձեռքին կբռնի: Իսկ հետո կպահեմ այդ ծրագիրը... Եվ ամեն անգամ Նոր տարուց առաջ կհանեմ, կնայեմ, կհիշեմ...»

Նոր տարուց անմիջապես առաջ, կարծես խոսքները մեկ արած, բացիկներ եկան մայրիկիս բոլոր քույրերից: Նրանք շնորհավորում էին տատիկիս, մայրիկիս ու հայրիկիս և նույնիսկ ինձ: Նորից էին գրում, որ շատ են կարոտել և անհամբեր հանդիպման են սպասում:

— Ծպասումի մեջ էլ հրապույր կա. ամեն բան դեռ առջևում է...— կամաց ասաց տատիկը:

Մայրիկն ու հայրիկը սկսեցին բացատրել, որ իրենք վաղը չեն ուզում ընկերական մի շրջանում գտնվել, բայց չգնալ ուղղակի չեն կարող: Ես, նրանց ընդօրինակելով, տխուր ասացի.

— Իսկ ես վաղը ստիպված եմ թատրոն գնալ...

Տատիկն սկսեց փութկոտ ինչ-որ բան փնտրել պայուսակում:

Այն ժամանակ ես... ինձ համար անսպասելի արտասանեցի.

— Արի՛ ինձ հետ, տատի՛կ: Ես ավելորդ տոմս ունեմ:

Ծնողներս շատ ուրախացան: Պարզվեց, որ նրանք էլ հաճույքով կգային ինձ հետ, որովհետև մանկական թատրոնում մեծերի համար շատ ավելի հետաքրքիր է, քան երեխաների: Նրանք հաճույքով իրենց տեղերը կփոխեին տատիկի հետ, եթե նա կարողանար իրենց փոխարեն այն ընկերական հավաքույթը գնալ... Իսկ տատիկն ավելի խոր կռացավ իր պայուսակի վրա: Նա շարունակում էր ինչ-որ բան փնտրել այնտեղ: Բայց, ինձ թվում էր, հիմա արդեն՝ ուրախությունից:

— Մազերս պետք կլինի կարգի բերել,— ասաց նա,— բայց վաղը վարսավիրանոց չես ընկնի: Ես իմ սև պզեստը կհագնեմ: Հը՞: Ի՞նչ եք կարծում: Սգվորի տեսք չի՞ տա ինձ:

— Սև գույնը տոնական գույն է,— ուրախ առարկեց հայրիկը:

Տատիկի թատերական հեռադիտակն էլ տոնական սև գույնի էր:

— Ուզո՞ւմ ես նայել,— դեռ ներկայացումից առաջ հարցրեց տատիկը:

Վերցրի հեռադիտակը... Եվ ուղղեցի բելետաժում նստած Գալյա Կովրովայի վրա:

«Ի՜նչ հրաշալի է,— մտածում էի ես:— Ի՜նչ հրաշալի է... Ես նրանից հեռու եմ, խսկ նա շատ մոտ է ինձ, համարյա իմ կողքին»:

Այդ ժամանակ տատիկը դիմեց իմ դպասեղանի հարևանին, որը թատրոնում էլ մեր հարևանը դուրս եկավ.

— Հապա մեկ րոպեով տուր ինձ քո ակնոցը: Ես կարծում եմ, որ ակնոցիդ շրջանակը քեզ համար հարմար չէ... Մեծ է: Դեմքդ բոլորովին չի երևում: Ապակիներն էլ լավ չեն մաքրված: Այսպիսի ջահի լույսի տակ դա իսկույն է նկատվում: Մաքրել պետք է ա՛յ այսպես... Թե չէ աչքերդ կփչացնես:

Մասնագիտությամբ տատիկն ակնաբույժ էր: Եթե նրա կողքին ակնոցավոր մարդիկ էին լինում, նա անպայման ստուգում էր՝ լա՞վ է արդյոք շրջանակը, հարմա՞ր են ապակիները: Իր աղջիկների մոտ գնալ երազելիս, նա ասում էր.

— Այնտեղ կստուգեմ... թե ինչ տեսողություն ունեն թոռներս:

Նա ուզում էր, որ բոլորն աշխարհում լավ տեսնեն:

«Այ, եթե Գալյա Կոլլովայի աչքերը մի քիչ ցավեին...--Երազում էի ես այն ժամանակ:— Միայն մի քիչ և ընդամենը մի քանի օր ցավեին... Ես նրան իմ տատիկի մոտ կտանեի»:

Սպիտակության հասնող շիկացած վիթխարի ջահն սկսեց կամաց-կամաց մարել... Անշտապ բացվեց վարագույրը: Եվ բեմի վրա մի տղա հայտնվեց: Նա քայլում էր, կանգ առնում, մտածում: Եվ նորից քայլում... Եվ ես հավատում էի, որ նա մի ծերացած կնոջ մոտ է գնում, որը կես դար ուսուցչուհի էր եղել, իսկ հետո հիվանդացել էր ու հեռացել դպրոցից: Իսկ ապրել առանց երեխաների չէր կարողանում: Եվ տղան որոշել է հաղթահարել նրա մենակությունը:

Երբ վիթխարի ջահն առաստաղի տակ նորից սկսեց շիկանալ, տատիկը մատով ծրագիրը ցույց տվեց, հենց այն ծրագիրը, որը ես պատրաստվում էի պահել ողջ կյանքիս ընթացքում, ու ասաց.

— Սա... կախարդ դերասանուհի է:

— Նա, որ տղայի դե՞րն է խաղում:

— Այո՛...— Տատիկը մի պահ լուռ մնաց: Հետո կամացուկ ավելացրեց.— Որովհետև նա՝ այդ դու ես: Համենայն դեպս, այսօր...

— Ի՞նչ ես ասում,— համեստորեն առարկեցի ես:

— Արի՛ բուֆետ գնանք,— առաջարկեց տատիկս:— Ես պաշտում եմ թատրոնական բուֆետներում հյուրասիրվելը:

Մենք ճեմասրահ դուրս եկանք: Ես կարծում էի, որ տղաները, տեսնելով ինձ տատիկիս հետ՝ կսկսեն լուռ խընդմընդալ: Բայց ոչ ոք չէր խնդմնդում...

Բուֆետում դեպի մեկ նետվեց ծնողական խորհրդի մայրիկն ու բացականչեց.

— Դա հրաշալի՛ է, որ դու տատիկիդ հետ ես եկել: Չես ամաչել:

— Տատի՛կ, շուտ գնա՛նք այստեղից... Տես ի՞նչ հերթ է,— ասացի ես:

— Այդ մեկը ոչ,— առարկեց նա:— Մանկական թատրոնում պառավին առանց հերթի պիտի թողնեն:

Նրան թողեցին... Բուֆետի վաճառասեղանին հասնելուց հետո, նա ետ դարձավ ու ձայնեց ինձ.

— Խնձորով կարկանդակ սիրո՞ւմ ես:

— Սիրում եմ,— ոչ անկեղծ պատասխանեցի ես: Որովհետև հասկացա, որ տատիկը ինքը դրանք շատ է սիրում:

Այժմ, շատ տարիներ անց, ես մտածում եմ. «Ափսոս, որ այն երեկո տատիկին չտեսան ուրիշ քաղաքներում ապրող նրա աղջիկները... Նրանք կհասկանային, թե որքան հեշտ էր նրան երջանկացնելը»:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



ՄԵՐ ՀՅՈՒՐԸ

# ՍՈՍ ՍԱՐԳՍՅԱՆ

## *Պայծառ ու հարուստ մանկություն ձեզ...*

Մանկությունն ու երջանկությունը անբաժանելի են իրարից: Սակայն մանկությունը միայն երջանկություն և հատկապես անհոգություն չէ:

Երևի լսած կլինեք ձեր մեծերից, որ ֆուտբոլ խաղալու համար գնդակը պատրաստում էինք ինքներս՝ չուլ, լաթ իրար կապելով, մի կերպ կլորացնելով... Փառք աստծո, հիմա դրա կարիքը չկա: Այսօր լավ հագնըվելը, մեքենաները, հեռուստացույցը և ուրիշ շատ ու շատ բաներ մըտել են մեր կենցաղի մեջ և չեն զարմացնում, սովորական են...

Այո, նյութական բարիքները իսկապես թող շատանան, թող դառնան սովորական: Միայն շատ ցավալի կլինի, եթե սովորական դառնան նաև հոգևոր արժեքները, այսինքն, եթե մենք հանկարծ հոգևոր արժեքներին էլ նայենք սպառողի նման, միայն վայելքի համար... Սա շատ վըտանգավոր է, որովհետև մեր հոգիները մեկ էլ տեսար ճարպոտեցին ու մենք մեզնից էլ աննըկատ դարձանք սովորական քաղքենիներ: Դա սկսվում է հասարակ բաներից, կյանքում ամեն ինչ սովորական դարձնելուց: Ասենք, գնալ Եղեռնի զոհերի հուշարձանի մոտ ու չապրել նրա խորիմաստությամբ, չհմայվել Հռիփսիմե տաճարը կառուցողի հանճարով կամ անցնել գեղեցիկ մի ծառի կողքով և չզարմանալ նրա գեղեցկությամբ: Ասելս այն է, որ չկորցնենք զարմանալու՝ մարդկային այդ հրաշալի հատկությունը: Մանկական տարիներից արդեն փորձենք մեզ սովորեցնել կյանքին ու արվեստին նայել լուրջ, պահանջկոտ, ոչ կուշտ մարդու նման, որ միայն զվարճանալ է ուզում, այլ մշտապես հոգևոր սննդի կարիք զգանք: Դուք՝ այսօրվա երեխաներդ վաղվա մեր հանդիսատեսն եք լինելու և ձեր ճաշակն է վաղը թելադրելու մեր վաղվա թատրոնի, ավելի ճիշտ կլինի ասել՝ ձեր թատրոնի դեմքը: Ուրեմն կցանկանայի, որ թատրոնը երբեք չըդառնա ձեզ համար ժամանցի հերթական տեղ, թող ձեր ամեն մի այցը թատրոն լինի տոն և երբեք չդառնա սովորական... Անհրաժեշտ է, որ վաղվա դերասանը (այսօր ձեր մեջ մեծացող) չըկարողանա հեշտությամբ բավարարել ձեր բարձրաճաշակ պահանջները: Քանի որ մեծ արվեստ, մեծ թատրոն ստեղծվում է այն դեպքում միայն, երբ ինքը հանդիսատեսը իր հոգում ունի մեծ, ազնիվ արվեստի, խորը արվեստի պատկերացումը, իդեալը:

Ուրեմն, հեռու այն սովորական դարձած անճաշակ, գռեհիկ, գավառական կերակուրներից, որ, ցավոք, այսօր երբեմն հրամցնում են մեզ: Թող ձեզ հետաքրքրեն ու բավարարեն միայն ու միայն արվեստի բարձր չափանիշները: Ցանկանում եմ ձեզ բոլորիդ մանկություն, որ լինի երջանիկ, անխռով, բայց նաև գիտելիքներով, տպավորություններով հարուստ ու իմաստուն: Մարդը պարտավոր է կյանք մտնել մանկությունից իր հետ բերելով հարուստ բեռ...

*ՍՈՍ ՍԱՐԳՍՅԱՆ*
*ՀՍՍՀ ժողովրդական արտիստ,*
*պետական մրցանակի դափնեկիր*

ԺՊԻՏՆԵՐ

## ԲԶԵԶՆԵՐԸ ՓՐԿԵՑԻՆ

ԱՄՆ-ի հարավում գտնվող գետերն ու լճերը ծածկվել էին ջրիմուռների խիտ շերտով: Որոշ լճերում այնքան շատ էին ջրիմուռները, որ կարելի էր քայլել ջրի վրայով և չսուզվել:

Քսան տարվա ընթացքում գիտնականները փորձում էին քիմիական նյութերով ոչնչացնել ջըրիմուռները, չէր հաջողվում: Վերջապես որոշեցին միջատաբաններ ուղարկել Հարավային Ամերիկա՝ այդ բույսի հայրենիքը: Գիտնականները այդտեղ հայտնաբերեցին մի փոքրիկ բզեզ, որն արտակարգ հաճույքով ջրիմուռ էր ուտում: Նրանք իրենց հետ ԱՄՆ բերեցին այդ բզեզներից և 267 հատ բաց թողեցին Ֆլորիդա նահանգի գետերից մեկում: Տասնվեց ամսում բզեզները մաքրեցին գետը ջրիմուռներից, և գետը պիտանի դարձավ նավարկության համար: Այժմ տասնյակ հազարավոր բզեզներ գետերում և լճերում օգտակար գործ են կատարում:





# Սարդարապատի ազգագրության թանգարանը

ՍՍՀՄ ժողովրդական ճարտարապետ Ռաֆայել Իսրայելյանի նախագծով են կառուցվել Սարդարապատի ճակատամարտին նվիրված հուշահամալիրը և նրան կից Հայաստանի պետական ազգագրության թանգարանը: Թանգարանն իր ճարտարապետական ձևերով ամբողջացնում է հուշահամալիրը և ավելի քան իմաստավորում այն:

Թանգարանի ցուցասրահներով անցնելիս, ասես անցնում ենք հազարամյակների, դարերի միջով ու ծանոթանում մեր նախնիների մշակույթին, կյանքին ու կենցաղին: Թանգարանի կենտրոնական, եռագմբեթ սրահը նվիրված է



- Թանգարանի կենտրոնական ցուցասրահը
- Թանգարանի ընդհանուր տեսքը
- Ազգագրական խմբակի անդամները հերթական պարապմունքի ժամանակ



ժամանակակից կիրառական դեկորատիվ արվեստի ցուցադրմանը: Այստեղ անընդմեջ հնչում են ազգային երաժշտություն և հնագույն երգեր՝ Լուսինե Զաքարյանի կատարմամբ:

Թանգարանն ունի գիտահետազոտական վեց բաժին: Բաժինների աշխատակիցները մոտակա գյուղերում ստեղծել են «Պատանի հնագետ» և «Պատանի ազգագրագետ» խմբակները: Արաքս սովխոզի միջնակարգ դպրոցում գործող «Պատանի ազգագրագետ» խմբակը ղեկավարում է կենցաղի և նյութական մշակույթի բաժնի վարիչ Արմենակ Խաչատրյանը: Խմբակի պարապմունքներին դասախոսություններով հաճախ են հանդես գալիս թանգարանի մյուս բաժինների վարիչներն ու գիտաշխատողները: Նրանք խմբակի անդամներին ծանոթացնում են աշխարհի տարբեր ժողովուրդների տնտեսության, մշակույթի, կյանքի ու կենցաղի հետ:

Մ. ՈՍԿԱՆՅԱՆ



# ՎԵՐՋԻՆԸ

*ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ*

Արդեն երեք օր է, ինչ մեր էշը հիվանդ է:

Տարբեր թաղերից եկած երեխաների բանակը հավաքվել է նրա շուրջը: Ծոյում են, փաղաքշում, այնպես նուրբ ու քնքուշ, կարծես զատկի ձու է, կկոտրվի, կարծես տոնածառի խաղալիք է, հանկարծ կընջարդվի:

— Մեղավորը Արայիկն էր,— ասում է Կարենը,— եթե շոկոլադ շատ չտար, էշը չէր հիվանդանա:

Արայիկը գլուխը խոնարհում է, դանդաղորեն ձեռքը սահեցնում էշի պոչի վրայով և չի համարձակվում արդարանալ:

— Մեղավորը Միրոն է,— մեջ է ընկնում Մըհերը,— կարագն առանց հացի տվեց: Ինչքան ասի, չլսեց:

— Վա՜խ, վա՜խ, ի՛շո՛ւկ ջան,— Վերանը համբուրում է ավանակի դունչը,— որ լավացար, էլ պապից թաքուն չենք քշի... շատ չենք քշի...

— Դու էլ ես մեղավոր,— բռնկվում է Կարենը հանկարծ,— էնքան քշեցիր, քրտնեցրիր: Տեսա՞ր, ոնց մրսեց: Պապին ասելու եմ:

— Սո՛ւս,— Արմենը սաստում է նրանց,— ախր պապը չգիտի, թե ինչ ենք արել, ինչ ենք ուտեցրել:

— Լավ էլ գիտի,— մեջ ընկավ Կամոն,— դեղձի կոմպոտը բերելիս՝ տատը տեսավ, մորս ասաց: Նա էլ ինձ ծեծեց: Պապը մորս վրա զայրացավ, մայրս էլ պատասխանեց՝ աչքն էլ եմ հանում, կոմպոտը ինչո՞ւ է էշին տալիս:

Իշուկը կանգնել է կըլոր շրջանի մեջ, տխուր ու տրտում, ականջները կախ, անգիտակից իր մեծ ու կարևոր դերին, իր թանկագին գոյությանը:

Երբ ուրիշ երեխաները հպարտ-հպարտ պատմում են իրենց նոր գնված ավտոմեքենայից կամ կահույքից, մեր Համիկը թերահավատ



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

նայում է նրանց, արհամարհանքով շպրտում.

— Էլ չեմ թողնի մեր էշին մոտենաս:

Այս բառերը բավական են, որպեսզի խռսակցությունը նոր գնված ավտոմեքենայից ու կահույքից տեղափոխվի դեպի ավանակը, նախանձով լցնի նրանց փոքրիկ սրտերը, խեղճանան Հասմիկի առաջ ու աղերսանքով նայեն նրա հպարտությամբ փայլող աչքերին:

Անցյալ տարի էշը քուռակ ունեցավ: Ի՜նչ ուրախություն էր մեր բակում...

Գյուղում երեխա չէր մնացել, որ չգուրգուրեր ու գորովանք չարտահայտեր: Բայց երեխաների խնդությունը մի շաբաթ հետո վշտի փոխվեց:

Անտառում գայլ էր երևացել, սովխոզից մի քանի հատ ոչխար կերել: Դիրեկտորը կանչեց գյուղի որսորդներին, շատ խնդրեց, խոստումներ տվեց, որ գայլին սպանեն: Սրանք էլ խելք-խելքի տվեցին, գիշատիչին հայտնաբերելու ամենահարմար ձևը գտան: Քուռակը պետք է կապեին անտառում մի ծառից, գայլը նրա հոտով գալու և թակարդն էր ընկնելու:

Որսորդները, ինչպես որոշել էին, իշուկին երկաթե լարով կապել էին ծառից, իրենք էլ մի տասը մետրի վրա տերևներից թաքստոց էին պատրաստել, մտել մեջը, զույգ հրացանների զույգ փողերն ուղղել ամեն ու միամիտ իշուկի կողմը, որ հենց գայլը մոտենա, անմիջապես կրակեն:

Երեկոն անցել է առանց փորձության, գիշերը խտացել է անտառում, լուսնյակը դուրս եկել: Ու մեր որսորդները սպասելուց հոգնած, քնել են:

Առավոտյան արթնացել են և ի՞նչ... Խեղճ իշուկի միայն գանգն էր մնացել: Որսորդները երբ գյուղ վերադարձան, մեծերը ծաղրեցին, ծիծաղեցին, փոքրերը լաց եղան:

Փոքրիկ իշուկին կորցնելուց հետո երեխաները իրենց հոգատարությունը կենտրոնացրին մոր վրա: Ում տանն ինչ լավ ուտելիք կար, թռցնում, բերում, տալիս էին էշին: Ախր գյուղի վերջին էշն էր, ամենից հարգված ու սիրված էակը երեխաների կողմից:

Իսկ հիմա էշը հիվանդ է: Հիվանդության պատճառը անսովոր սնունդն է: Մեղավորը երեխաներն են, որ ձեռքներն ընկած ուտելիքը՝ շոկոլադ, տորթ, պեչենի, ջեմ, մուրաբաներ, կոմպոտներ, տապակած ու խաշած մրսակտորներ, թխվածքեղեն, նույնիսկ զանազան խմիչքներ տալիս են նրան, զոռով կամ կամով ուտեցնում:

— Երեխանե՛ր, — ասում եմ,— դա ի՞նչ էշ է, որ իմանաք ի՞նչ ավանակներ կային... Սահակ պապը մի էշ ուներ՝ թամբով ու սանձով, ոնց որ ձի: Որ զռալն սկսում էր, մինչև հիսունը չքամամեր, ձայնը չէր կտրի: Իսկ դա քանի՞ անգամ է զռում:

— Զռալը մեզ պետք չէ,— պատասխանեցին անտարբեր ու նորից անցան հիվանդության քննարկմանը,— ի՞նչ անենք:

— Արշակ քեռուն խնդրեմ, ավտոմեքենայի տակ գցի, այդ դարդից պրծեք:

Արշակը մեծ ինքնաթափի վարորդն է: Զարմանալի մարդ է, կարծես խեղճ կենդանիները իր անձնական թշնամիներն են: Ճանապարհի եզրերին ամեն արածելիս, մեքենան ուղիղ քշում է դեպի նրանց:

— Դիտավորյալ չեմ անում, ազնիվ խոսք,— միշտ արդարանում է,— ախր ճամփի մեջտեղից չեն հեռանում:

— Ինչո՞ւ հենց քեզ են հանդիպում:

— Գիտեն, որ իրենց շատ եմ սիրում,— հեգնում է:

Հիմա երեխաները, երբ նրա անունը լսեցին, չարացան:

— Արշակ քեռուն կը-

ծեծենք, — ասացին, — հետո էլ մեր իշուկին չենք թողնի ճանապարհ դուրս գա:

— Դրանով էշին չբուժեցիք, — դիտավորյալ բորբոքում եմ նրանց երևակայությունը, — ուրիշ բան մտածեք:

— Բա ի՞նչ անենք,— լացակումեցին:

— Էշը ձմերուկ շատ է սիրում, ձմերուկ ճարեցեք:

Երեխաները մտատանջության մեջ ընկան՝ ձմեռ օրով ձմերուկ որտեղի՞ց:

Բայց երեխաները հենց նրանով են երեխա, որ կարծում են, ամեն ինչ հնարավոր է ու պահանջում են: Այդպես եղավ նաև այս անգամ: Միանգամից ցրվեցին:

Չգիտեմ ում տանը ինչ խոսակցություն բացվեց այդ երեկո, բայց հաջորդ օրը բոլոր խոսակցությունների արձագանքը մեր բակում վերջացավ: Հասկանալի է, ոչ մեկը ձմերուկ չէր ճարել, բայց մեր իշուկի համար հազվագյուտ տեսակի մրգեր էին բերել: Էլ նարինջ ու մանդարին, էլ լիմոն ու նուռ, էլ տանձ ու չորացրած ծիրան, մոռի ու մոշի մուրաբաներ...

Արդեն ամբողջ գյուղն էր մտահոգված մեր էշի առողջական վիճակով: Չէ՞ որ նա վերջինն էր իր ցեղակիցներից, որ դեռ ապրում էր մեր գյուղում:

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ

## Մանկան տարի

Զանգակները թող ղողանջեն ախորժալուր,
Եվ ցողերով թող մանուկները լվացվեն,
Զվարթ, անհոգ երգը հնչի թող ամենուր,
Մեր սրտերում թող ծաղիկներ անվերջ բացվեն:

Եվ երկիրը մանկան նման թող ջինջ դառնա,
Ազնվանան բողբոջի պես սրտերը հեզ,
Երջանկությունը ծավալվի ու ծովանա
Ամենուրեք, ամենուրեք, ամենուրեք...

ԳՈՀԱՐԻԿ ՆԻԿՈՂՈՍՅԱՆ
Երևանի № 74 դպր., 7-րդ դաս.

ԱՐԱՄ ԵԴԻԳԱՐՅԱՆ
Հ. Կոչոյանի անվ. դպր., 3-րդ դաս.



ԱՇԽԱՐՀԻ ԵՐԵԽԱՆԵՐԸ

## Ազատություն

Ծնվում ես մանկան առաջին ճիչով,
Ազատություն,
Ծնվում, քայլում ես փշերի միջով,
Ազատություն,
Մարդկանց սրտերն ես բերում իրար մոտ,
Ազատություն,
Երբ կաս՝ պոետ է դառնում ամեն ոք,
Ազատություն,
Բայց քեզ մոտ բերող ճամփան է փշոտ,
Ազատություն:
Զանգ երջանկության և օվկիան հույսի,
Ազատություն,
Մութ է տիեզերքն առանց քո լույսի,
Ազատություն,
Բանալիներն են բոլոր քո ձեռքում,
Ազատություն,
Ու քեզ փրկելով մենք մեզ ենք փրկում,
Ազատություն:

*ՄԵԼՈԴԻ ՋՈՆՍ,*
*ԱՄՆ, Նյու-Յորք, Հարլեմ*



*ԻՈԼԱՆՏԱ ՍԱՈՒԼԻՏ, 10տ. ՍՍՀՄ, ք. Ռիգա*

## Իմ լուսնյակ տղան

Լույսը հոսում է պատուհանից ներս,
Ինչ պայծա՜ռ ես, լուսի՛ն, ինչ պայծա՜ռ,
Ինձ համար ինչ լավ որդի կլինես,
Ինչ պայծա՜ռ ես, լուսի՛ն, ինչ պայծա՜ռ:

Նա մոտ է գալիս լուսնի կածանով
Արծաթե զգեստներ կան հագին,
Ես իմ թևերի տակ ծիածանով
Կգրկեմ մի փշուր լուսնյակի:

Արծաթյա լույսը ծորում է, հոսում,
Եվ լույսն այդ ինձ թվում է կածան,
Ինձ մոտ է տղան կածանով վազում,
Ինչ պայծա՜ռ ես, լուսի՛ն, ինչ պայծա՜ռ...

*ՇԵՐՐԻ ՋՈՆՍ,*
*ԱՄՆ, Նյու-Յորք, Հարլեմ*

*Թարգմ. ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆԻ*

*ԵՎԳԵՆԻ ՍԿՈՐՈԽՈԴՈՎ, ՍՍՀՄ, ք. ԶԱՊՈՐՈԺՅԵ*



# ՕԼԻՄՊԻԱԴԱ-80



Օլիմպիական խաղերի հայրենիքը հին Հունաստանն է։ Հին հունական առասպելներում ու լեգենդներում շատ տեղեկություններ կան այդ խաղերի վերաբերյալ։ Ըստ այդ տեղեկությունների, առասպելի հերոսը երբ հաղթում էր հակառակորդին, հենց մարտադաշտում զոհ էր մատուցում Օլիմպոսի աստվածների պատվին։ Այնուհետև վազքի, ըմբշամարտի, նիզակի և սկավառակի նետման մրցումներ էին տեղի ունենում։ Երբեմն այդ խաղերին մասնակցելու հրավեր էին ստանում նաև Հունաստանի այլ քաղաքների պատերազմներում աչքի ընկած հերոսները։ Հույն ռազմիկներից Հերակլեսը (հռոմեական՝ Հերկուլես), Ագամեմնոնը, Աքիլլեսը և ուրիշներ, կազմակերպել են նման խաղեր, որը և դարձել է ավանդություն։

Առաջին օլիմպիադան տեղի է ունեցել Օլիմպիայում մ. թ. ա. 776 թվականին։ Գրավոր աղբյուրներն ու պատմական հուշարձանները վկայում են, որ սկզբնական խաղադաշտերը եղել են ուղղանկյունաձև, երբ դեռ միայն վազքի մրցումներ էին անցկացվում, այստեղից էլ գալիս է մրցության վայրի անվանումը՝ ստադիոն, որը մոտ 200 մետր երկարություն ուներ։ Ստադիոնը, կամ ինչպես նրանք էին անվանում՝ ստադիան, հենց այդ չափի էր։

Ըստ ավանդության, ստադիան այն տարածությունն էր, որը մի շնչով անցնում էր հին հունական հերոս Հերակլեսը. այսինքն՝ մի անգամ ներշնչելով ու արտաշնչելով, մեկնարկից հասնում էր եզրագիծ։ Այդպիսի մարզադաշտը թելադրված էր նաև նրանով, որ հանդիսատեսները կարողանային տեսնել մարզիկի

# ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ. ՕՆՈՐԵ

## ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԳԱՎԱԶԱՆԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

Բալզակը չափազանց շռայլ կյանք էր վարում։ Նրա կատարած ծախսերը հսկայական էին՝ երբեմն զուրկ որևէ տրամաբանությունից։ Աշխատանքի մեջ կենտրոնանալու համար նրան հարկավոր էին շքեղ կահավորված սենյակներ, իսկ գրադարակների վրա պետք է շարված լինեին թանկարժեք կազմերով գրքեր և բրոնզե արձանիկներ։ Նրա սենյակների հատակը ծածկված էր լինում պարսկական թանկարժեք գորգերով, իսկ ճաշասպասքը արծաթից էր։ Նա սիրում էր գործածել նրբագեղ գավազանիկներ, որոնք լայնորեն հայտնի էին Փարիզի գրական ու ազնվական շրջաններում։ Այդ գավազանիկները դրվագված էին թանկարժեք քարերով, ունեին ոսկե, արծաթե, փղոսկրե, նույնիսկ ռնգեղջյուրի ոսկրից պատրաստված կո-



և՛ մենամարտը, և՛ նիզակի նետումը: Հին հունական այդ մարզախաղերը տեսնելու էին գալիս Հունաստանի բոլոր ծայրերից, իսկ դրանք կազմակերպվում էին Հելլադայի Օլիմպիա փոքրիկ քաղաքում:

Օլիմպիական խաղերի նպատակը հին հույները գնալով ավելի մեծ հետաքրքրություն էին ցուցաբերում, ընդլայնվում էին նաև խաղերի ծրագրերը, նոր մարզաձևեր էին մուտք գործում: Ստադիոնն այլևս ի վիճակի չէր բավարարելու այդ պահանջները: Ուստի և ավելանում էին նոր խաղահրապարակներ՝ սփենդոններ:

Օլիմպիադաներում հաղթողներին պարգևում էին ձիթենու տերևից-հյուսված պսակ, հայրենի քաղաքներում մեծ շուքով դիմավորում էին նրանց, երբեմն նաև արձանները կանգնեցնում քաղաքի հրապարակներում:

Այսպես ամատավորվել ու ավանդական էին դարձել այդ խաղերը: Սակայն հռոմեական տիրապետության շրջանում Հռոմի կայսր Թեոդոս Առաջինը (394 թ.) արգելեց օլիմպիադաներ կազմակերպելը, իսկ նրա հաջորդը՝ Թեոդոս Երկրորդը հիմնովին կործանեց Հելլադայի Օլիմպոս քաղաքը:

Սակայն ուժի, հմտության, ճարպկության ու գեղեցկության ցուցադրման այդ հին մարդկությունը չմոռացավ: Վերջին օլիմպիադայից 1500-տարի հետո՝ 1896 թվականին, ֆրանսիացի Պիեռ դը Քուբերտենի նախաձեռնությամբ Հունաստանի մայրաքաղաք Աթենքում անցկացվեց առաջին օլիմպիադան: Հաջորդը՝ ի պատիվ Քուբերտենի տեղի ունեցավ Փարիզում՝ 1900 թվականին:

Այնուհետև աշխարհի տարբեր քաղաքներում չորս տարին մեկ կազմակերպվում էին այդ խաղերը, մինչև առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմները, որոնց պատճառով տեղի չունեցան վեցերորդ, տասներկու և տասներեքերորդ օլիմպիադաները:

Սովետական Միության մարզիկները օլիմպիական խաղերին մասնակցում են 1952 թվականից սկսած՝ անմիջապես գրավելով մարզական աշխարհի ուշադրությունը:

1980 թվականին մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի վրա կծածանվի հինգ օղակներով դրոշը: Այժմ Մոսկվայում հսկայական շինարարական աշխատանքներ են կատարվում օլիմպիադան անցկացնելու համար: Վերակառուցվում են Լենինի անվան կենտրոնական ստադիոնը Լուժնիկիում, «Դինամո» մարզական ընկերության և պատանի պիոներների ստադիոնները: Պատրաստ է Կրիլատսկու ջրանցքը, ավարտվում են հեծանվուղին, Եփրոպայում խոշորագույն ծածկած մարզադաշտը, կառուցվում են ըմբշամարտի, բռնցքամարտի, ծանրամարտի, սուսերամարտի և մնացած մարզաձևերի համար նախատեսված հրապարակները, ջրավազանները ու մարզադահլիճները:

Օլիմպիականների եռուլթներին միաժամանակ հետևելու են 880000 հազար մարզասերներ:

Բացի Մոսկվայից, օլիմպիական ծրագրով նախատեսված որոշ խաղեր կանցկացվեն Լենինգրադում, Կիևում, Մինսկում ու Տալլինում:

ՎԱՀԱՆ ՄԽԻԹԱՐՅԱՆ

# ԴԸ ԲԱԼԶԱԿԻ ՄԱՍԻՆ

թեր: Առասպել էին հորինել՝ իբր այդ ձեռնափայտերն օգնում են Բալզակին անտեսանելի դառնալ և ավելի լավ դիտել մարդկային կյանքի խոր գաղտնարանները: Նա սարքում էր ճոխ խնջույքներ և հյուրերին հավատացնում էր, թե ինքն ունի զորեղ մի թալիսման, որն անբավ հարստություն է տալիս իրեն և դարձնում ժամանակի ու տարածության տիրակալ: Այդպիսի մի ճաշկերույթի ժամանակ հռչակավոր Ռոսինին իր համպաղորդ ձայնով հայտարարեց, թե նույնիսկ միապետների մոտ նման բաներ չի տեսել, չի կերել, չի խմել:

Իսկ երբ հյուրերը ցրվում էին՝ մեծ մարդագետը հագնում էր իր ձյունաթույր ատլաս փարաջան և կրկին սկըսում աշխատել՝ լուսաբացից լուսաբաց, օրական քնելով չորս ժամից ոչ ավելի, որովհետև ամբողջ կյանքում նրան հետապնդում էին պարտատերերը՝ պահանջելով պայմանագրով խոստացված հերթական հոդվածաշարը, պատմվածքների գիրքը, վեպը, վիպաշարը:

Անվերջ նստակյաց կյանքից նրա իրանը փքվել էր, հասել հսկայական չափերի, ոտքերը մնացել էին բարակ, թույլ, ոռոնք, սակայն իսպանական գրանդի հպարտությամբ էին առաջ տանում նրա հանճարեղ գլուխը, որը զույգ լինելով արտաքին գրավչությունից, միաժամանակ զարմանալի պատկառանք էր ներշնչում և առաջացնում էր խորհրդավոր երկյուղածություն: Բալզակն ստեղծում էր իր աշխարհը, որը հերթական մի ճաշկերույթից հետո մտահղացավ անվանել «Մարդկային կատակերգություն»:

# ԲԱԼԶԱԿՆ ԻՐ ՄԱՍԻՆ

Դքսուհի դը Աբրանտեսին գրած նամակում այսպես է նկարագրում ինքն իրեն.

«Եթե ես որևէ բանով կարող եմ պարծենալ, ապա՝ իմ հոգևոր եռանդով։ Հնազանդվելն ինձ համար անտանելի է։ Ես հրաժարվել եմ շատ պաշտոններից, որովհետև չեմ ցանկացել մնալ որևէ մեկի



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

ենթակայության տակ. այդ իմաստով ես իսկական վայրենի եմ։

Ես ընդամենը հինգ ֆուտ և երկու դյույմ հասակ ունեմ, բայց իմ մեջ ներընդունել եմ բազմաթիվ ամենաանմիտ և նույնիսկ հակասական հատկություններ. ահա թե ինչու նրանք, ովքեր կասեն, որ ես փառասեր եմ, վատնող, կամակոր, թեթևամիտ, անհետևողական, ինքնասիրահարված, անփույթ, ծույլ, ոչ նստակյաց, անխոհեմ, անհեռատես, շաղակրատ, անտակտ, տգետ, անկիրթ, անքաղաքավարի, փնթփնթան, փոփոխամիտ, նույնքան իրավացի կլինեն, որքան նրանք, ովքեր կպնդեն, թե ես խնայող եմ, համեստ, արի, համառ, եռանդուն, ժուժկալ, աշխատասեր, հետևողական, լռակյաց, զգայուն, նրբանկատ և միշտ կենսուրախ։ Նա, ով ինձ վախկոտ կանվանի, շատ ավելի չի սխալվի, քան նա, ով ինձ կանվանի քաջարի. գիտուն կհաշվեն ինձ թե տգետ, տաղանդավոր թե անտաղանդ,— ինչ էլ հայտնաբերելու լինեն իմ մեջ, ոչինչ չի զարմացնի ինձ։ Վերջիվերջո ես եկա այն եզրակացության, որ ես լոկ հլու գործիք եմ, որի վրա խաղում են հանգամանքները։

Ինչպե՞ս բացատրել նման կալեյդոսկոպը։ Երևի ամբողջ գաղտնիքն այն է, որ ճակատագիրը այնպիսի մարդկանց հոգիներին, ովքեր ձգտում են նկարագրել մարդկային սրտերն հուզող կրքերը, ընձեռում է այդ նույն կրքերը, որպեսզի նրանք կարողանան երևակայության ուժով վերապրել այն, ինչը պատկերում են, իսկ մի՞թե դիտողականությունը յուրատեսակ հիշողություն չէ, որն օգնում է նույն այդ կենդանի երևակայությանը։ Ես սկսում եմ մտածել, որ դա հենց այդպես է»։

# ՀԱՆՃԱՐԵՂ ՄԻԱՄՏՈՒԹՅՈՒՆ

Ավստրիայում ճամփորդելիս, լեզուն չիմանալու պատճառով, Բալզակը ստիպված էր որոշակի դժվարություններ հաղթահարել։ Օրինակ՝ դիլիժանսների տերերը հաճախ դժգոհում էին, որովհետև նա վճարում էր շատ ավելի պակաս, քան իրենք սպասում էին։

Բալզակը, վերջապես, մի այսպիսի ելք գտավ։

Երբ հարկավոր էր լինում վճարել՝ նա կառապանի ձեռքը մի արծաթ դրամ էր դնում և հետևում էր նրա դեմքի արտահայտությանը։ Ապա դնում էր երկրորդը, երրորդը, չորրորդ դրամը և այսպես այնքան, մինչև որ կառապանի դեմքը ողողվում էր գոհունակության ժպիտով։ Այդժամ նա կառապանի ձեռքից մի արծաթ դրամը ետ էր վերցնում և հեռանում՝ այն համոզմամբ, որ վճարել է ոչ ավելի, քան պետք էր։



# ԾԱՌԻ ՏՈՆԸ ՊԵՏՔ Է ՏՈՆ ԼԻՆԻ ՆԱԵՎ ԲՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Վերջին տարիներին պիոներ-դպրոցականների համար բնաճանաչողական զանազան միջոցառումներ են կազմակերպվում, որոնց նպատակն է նրանց մեջ սեր ու նվիրվածություն դաստիարակել հայրենի բնության նկատմամբ: Այդ միջոցառումներից են Թռչնի օրը, Ծաղկի տոնը, Անտառի շաբաթը և այլն:

Կասկածից վեր է, որ այդ տոնահանդեսները ճանաչողական և ուսումնադաստիարակչական մեծ նշանակություն ունեն: Պիոներ-դպրոցականները ծանոթանում են հայրենի բնաշխարհի բուսական ու կենդանական աշխարհի ներկայացուցիչների հետ, ուսումնասիրում դրանց կենսաբանական առանձնահատկությունները, տեղեկություններ ստանում այն մասին, թե ինչպես պետք է պահպանել և անհետանալու վտանգից փրկել հազվագյուտ տեսակները:

Սակայն, ցավոք, երբեմն այս հրաշալի միջոցառումները բնությանը, հատկապես բուսական աշխարհին մեծ վնաս են պատճառում:

Բանն այն է, որ մի շարք մանկավարժներ սխալ են պատկերացնում Ծաղկի տոնի էությունը: Նրանց հանձնարարությամբ երեխաները հսկայական քանակությամբ դաշտային ծաղիկներ են քաղում, զարդարում դպրոցն ու դասասենյակները, պիոներական ճամբարները, ծաղիկներին նվիրված բանաստեղծություններ են արտասանում, երգում, զանազան խաղեր կազմակերպում... իսկ ծաղիկները թառամում են (դաշտային ծաղիկները ընդհանրապես արագ են թառամում) և տոնահանդեսն ավարտվելուց անմիջապես հետո դեն նետվում:

Մինչդեռ [illegible] և անփութորեն հավաքված այդ դաշտային ծաղիկների մեջ կան տեսակներ, որոնք խիստ հազվագյուտ են և գտնվում են անհետացման եզրին: Եվս մի քանի այդպիսի Ծաղկի տոն, և որոշ խիստ արժեքավոր ու հազվագյուտ բուսատեսակներ կվերանան մեր բնաշխարհից:

Անհրաժեշտ է, որ այս հարցը մտահոգի պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչներին, մանկավարժներին ու բնակչությանը: Զարմանալի հաճելի է, որ անտարբերության համընդհանուր ֆոնի վրա վերջերս ժողովրդական պատգամավորների Հրազդանի շրջանային սովետի գործադիր կոմիտեն որոշում կայացրեց՝ արգելել մասնավոր անձանց և զանազան կազմակերպությունների կողմից վայրի դեկորատիվ, սննդային և դեղաբույսերի հավաքը, անկախ դրանց տեսակային կազմից և տնտեսական նշանակությունից: Արգելվում է նաև առանց ՀՍՍՀ ԳԱ բուսաբանական ինստիտուտի և Հրազդանի շրջսովետի գործկոմի թույլտվության բուսաբանական ուսումնասիրություններ կատարել և հերբարիում հավաքել: Միաժամանակ որոշման մեջ նշվում է, որ բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների ուսումնական պրակտիկան շրջանի տերիտորիայում կարելի է անցկացնել միայն այն դեպքում, երբ ծրագրերը հաստատված է շրջգործկոմի կողմից:

Որոշման մեջ հատուկ կետ կա նաև այն մասին, որ կտրականապես արգելվում է ծաղկի տոներ անցկացնելու նպատակով վայրի ծաղկաբույսերի մասսայական հավաքը և ճամբարների ու հանգստյան տների զարդարումը դաշտային թարմ ծաղիկներով:

Միաժամանակ գործադիր կոմիտեն որոշում է կայացրել ուժեղացնել դաստիարակչական աշխատանքը դպրոցներում և պիոներական ճամբարներում, աշակերտների մեջ սեր դաստիարակելով դեպի բնությունը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր դպրոցական լավ իմանա բուսական հարստությունների պահպանման կարևորությունը ներկա և ապագա սերունդների համար:

Այս հրաշալի նախաձեռնությունը օրինակ պետք է ծառայի մեր հանրապետության բոլոր շրջանների ղեկավար մարմիններին, քանի որ, դժբախտաբար, վայրի բուսականության նկատմամբ անտարբեր վերաբերմունքի փաստերը լայն բնույթ են կրում:

Մի կարևոր հարց ևս: Ծաղկի տոների նպատակն է, որպեսզի երեխաները ներկայացնեն իրենց աճեցրած ու խնամած ծաղկեփնջերը: Դա մի գեղեցիկ մրցույթ է, որտեղ հաղթում է այն աշակերտը, որն ամբողջ տարվա ընթացքում ջանք ու եռանդ չի խնայել գեղեցիկ, փարթամ ծաղիկներ աճեցնելու համար: Սակայն մրցույթում շատ հաճախ խրախուսվում են այն երեխաները, որոնք սեփական ձեռքերով ոչինչ չեն աճեցրել և Ծաղկի տոնի կապակցությամբ մեծ քանակությամբ վայրի ծաղիկներ են բերել՝ ամայացնելով բնությունը:

Մենք դեմ ենք այս բնույթի ծաղկի տոներին: Ծաղկի տոնը պետք է տոն լինի առաջին հերթին բնության համար:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*

Լույս է տեսնում 1923 թվականից

ՊԻՈՆԵՐ 10. 1979 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ՀՐԱՆՏ ՏԵՐ-ՂՈՒԿԱՍՅԱՆԻ, 7 տ., Երևան:

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 03278: Պատվեր 1747: Տպաքանակ 53312: Տպ. 3 մամ.:
Հանձնված է արտադրության 10/VIII 1979 թ.:
Ստորագրված է տպագրության 11/X 1979 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

# Խաչբառ



1. Դաշտային ծաղիկ:
2. Սովետական ականավոր ֆիզիկոս, լույսի տեսության բնագավառում:
3. Հայկական ժողովրդական երգ:
4. Տիեզերագնաց-օդաչու:
5. Եկեղեցական երաժշտություն:
6. 20-րդ դարի հայ ականավոր դիվանագետ:
7. Աշխարհահռչակ հայ մարմնամարզիկ, աշխարհի և Եվրոպայի բազմակի չեմպիոն:
8. Հայերեն հանդես, որ լույս էր տեսնում Մադրասում:
9. Արդյունաբերական խոշոր կենտրոն Հունաստանում:
10. Կոմիտասի երգերից:
11. Ռուս նշանավոր կոմպոզիտոր և քիմիկոս:
12. Թվի մաս:
13. Պայթուցիկ նյութ:
14. Դասական շախմատի դպրոցի հիմնադիրը:
15. Դեմիրճյանի բանաստեղծություններից:
16. Սովետական ականավոր բեռնախույզ:
17. Հայ ականավոր ավիակոնստրուկտոր:
18. Ռուս նշանավոր բուսաբան:
19. «Սասունցի Դավիթ» էպոսի հերոսներից:
20. Սփյուռքահայ նշանավոր գրող:
21. Անցյալ դարի ռուսական բանակի հայ նշանավոր զորավար:
22. Աղայանի բանաստեղծություններից:
23. Երկրաչափական խնդիրների ժողովածուի հանրահայտ հեղինակ:
24. Պռոշյանի «Ցեցեր» վեպի հերոսներից:

Կազմեց՝ ԱՐՇԱԿ ԶԱԼԱՐՅԱՆԸ

# Գրական ծածկագիր

| Շ | Ր | Ր | Մ | Ա | Մ | Ջ |
| --- | --- | --- | --- | --- | --- | --- |
| Ա | Դ | ՈՒ | Դ | Ց | Մ | Ա |
| Ր | Ա | Յ | Ե | Ն | Ր | Ռ |
| ՈՒ | Շ | Ո | Ա | Ե | Ր | Ա |
| Ֆ | Ա | Ի | Հ | Ո | Ա | Յ |
| Վ | Ն | Ս | Ա | Դ | Դ | Ա |
| Ս | Ք | Ա | Յ | Յ | Ը | Ն |

Այս գծագրի վրա 14 շերտերը հյուսված են իրար: Տառերից յուրաքանչյուրի տակ թաքնըված է մեկ ուրիշ բառ: Փորձեցեք վերականգնել թաքնված տառերը այնպես, որպեսզի շերտերի վրա հորիզոնական ուղղությամբ շարունակաբար կարդացվեն 7 հայ գրողների ազգանուններ, իսկ ուղղահայաց շերտերում նրանց ստեղծագործությունների անունները:

Առաջարկ՝ ՑՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԸ





# ՊԱՀՊԱ- ՆԵՆՔ ՄԵՐ ՀՈՒՇԱՐ- ՁԱՆՆԵՐԸ

Հավուց Թառի (11—18-րդ դար) հուշարձանախումբը գտնվում է Աբովյանի շրջանում: Եղել է Պահլավունի իշխանների հոգևոր կենտրոններից մեկը:

Ինչպես տեսնում եք, այս հուշարձանախումբը նույնպես վերջերի նման իր վրա է կրում տարբեր անունների, թվականների փորագրություններ և նկարներ:

Վերան, Եսթերը, Քնարը, Աղասին և մյուսները, որոնք անմտորեն և առանց ամոթի իրենց անունները են փորագրել հուշարձանախմբի պատերին, անշուշտ չգիտեն էլ, թե հուշարձանախումբն ինչ հսկայական արժեք է ներկայացնում: Այս բանում իրենց մեղքի բաժինն ունեն թե՛ նրանց ուսուցիչները, թե՛ ծնողները:

ԻՆԴԵՔՍ 77806